II

ՆՎԻՐՎՈՒՄ Է ՀԱՅ ԳՐԵՐԻ
ՍՏԵՂԾՄԱՆ 1600-ԱՄՅԱԿԻՆ
ԵՎ ՍՐԲՈՑ ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ԲՈՒՅԼԻՆ

# «ԴԱՇԱՆՑ ԹՈՒՂԹ». ԿԱԶՄԸ, ՍՏԵՂԾՄԱՆ ԺԱՄԱՆԱԿԸ, ՀԵՂԻՆԱԿՆ ՈՒ ՆՊԱՏԱԿԸ

ՀՐԱՉ ԲԱՐԹԻԿՅԱՆ

*Սույն հոդվածի հետազոտության առարկան «Դաշանց Թուղթ» խորագիրը կրող բազում ընդօրինակություններով մեզ հասած աղբյուրն ըստ իր բովանդակության վերաբերում է հռոմեական կայսր Կոստանդին Մեծի և Հայոց արքա Տրդատ III-ի միջև Հռոմում կնքված պայմանագրին: Աղբյուրում մանրամասն խոսվում է Տրդատ արքայի և Գրիգոր Լուսավորչի բազմամարդ թափորով Հռոմ ժամանելու, կայսեր ու Հռոմի պապ Սեղբեստրոսի կողմից նրանց ցուցաբերած արտակարգ ընդունելության, շնորհված նվերների և բազում այլ հարցերի մասին:*

*«Դաշանց Թուղթն» առաջին անգամ հրատարակվել է Վենետիկում 1683 թ. Հովհաննես Հոլովի իտալերեն թարգմանությամբ հանդերձ: Այդ հրատարակությունը հետազոտողներին հայտնի դարձավ սոսկ 1961 թ., երբ հայտնաբերվեց Հ. Անասյանի կողմից Մաշտոցի անվան Մատենադարանի № 2272 դրչագրի ժողովածուի կազմի մեջ[1]: Այն վերնագրված է «Թուղթ սիրոյ և միաբանութեան մեծի կայսերն Կոստանդիանոսի և սրբոյն Սեղբեստրոսի վեհագունի փափին և Տրդատայ Հայոց արքայի, և սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչին: Շարադրեցեալ յամի Տեառն երեք հարիւր և տասն և վեց. և տպագրեալ ի թուի Փրկչին 1683, ի Վէնէտիկ քաղաքի»[2]:*

*Այնուհետև հայտնաբերվեցին աղբյուրի բազմաթիվ արտագրություններ, որոնցից երկուսը հրատարակության արժանացան: Մեկը լույս տեսավ 1709 թ. որպես հավելված Ագաթանգեղոսի «Հայոց պատմութեան»: Պատճառն այն է, որ «Դաշանց Թղթի» վերջում ասվում է. «Այս գիր միաբանութեան և սիրոյ և հաստատ հայրենապրութեան ի հետ Հայոց գրեցաւ հրամանաւ մերով Կոստանդեայ կայսեր և Սեղբեստրոսի պապի ... լատին*

---

[1] *Հ. Ս. Ա ն ա ս յ ա ն.* XVII *դարի ազատագրական շարժումներն Արևմտյան Հայաստանում. Երևան, 1961, էջ 51, ծանոթ. 1:*

[2] *Իտալերեն թարգմանության վերնագիրն է.* Lettera dell' Amicitia e dell' Unione di Costantino gran Cesare e di San Siluestro Sommo Pontifice, e di Tridade Re dell'Armenia, e di S. Gregorio Illuminatore della Natione Armena. Scritta nell Ano del Signore 316. In Venetia. M.DC.LXXXIII. Appresso Michiel Angelo Barboni.

լեզուաւ մակադրեալ և արքունական մատանեաւ մերով կնքեալ և ստորագրեալ. և զհաւասարն այսմ թղթոյ միաբանութեան թուղթն ի հետ Տրդատայ և Սրբոյն Գրիգորի եդաք ի շամբոն արքունի. իսկ միւս գիրս փոխաւէրեալ ատենաւպրին Հայոց Թագաւորին Տրդատայ Մեծի, Ագաթանգեղոսի, քաջ ճարտար դրչի և տարեալ ի Հայս...»[3]:

«Դաշանց Թղթի» հաջորդ ամբողջական հրատարակությունն իրականացրեց Կ. Շահնազարյանը: Պատճառն աղբյուրի բովանդակության և դրա քաղաքական-եկեղեցական ուղղվածության շուրջ գնացած սուր վեճն էր, որ հրատարակիչն ունեցավ Մատթեոս Կոստանդնուպոլսեցի արքեպիսկոպոսի հետ: Գրքույկը վերնագրված է. «Դաշանց Թղթոյ քննութիւնն ու հերքումը: Արար Կ. Վ. Շահնազարեանց, միաբան Սրբոյ Էջմիածնի և անդամ խորհրդարանի Կ. Ճեմարանին Տեարց Լազարեանց, որ ի Մոսկվայ: Պարիս, 1862»:

Խնդրո առարկա աղբյուրին անդրադարձան բազում հետազոտողներ, որոնցից առավել կարևոր կարծիքների մասին խոսելու ենք ստորև: Նախ և առաջ կանգ առնենք մեծանուն Միքայել Չամչյանի կողմից աղբյուրին տված գնահատականին: Նա, իր «Հայոց պատմութիւն» մեծարժեք աշխատության առաջին հատորի սկզբում, հիշատակելով իր օգտագործած աղբյուրները, առաջինը նշում է Ագաթանգեղոսին. «Սա գրեաց մատեան մի վասն Տրդատայ: ... իսկ թէ յո՛ր լեզու շարագրեալ իցէ սորա զգիրս իւր, արդեօք յունարէն՝ թէ հայերէն, տարակոյս է»: Հիշելով Կոստանդնուպոլսում 1709 թ. լույս տեսած Ագաթանգեղոսի Պատմությունը, նա գրում է. «...յորոյ վերջն եդեալ կայ և Թուղթն Դաշանց բազում յաւելուածով»[4]: Սրանից կարելի է եզրակացնել, որ նա «Դաշանց Թուղթը» համարում է նույն Ագաթանգեղոսի գործ, բայց հետագայում այլևայլ օտարոտի շարադրանքներով ճոխացված:

Բուն գրքի շարադրանքում նա մանրամասն նկարագրում է Տրդատ արքայի և Գրիգոր Լուսավորչի Հռոմ ճանապարհելը, Կոստանդին կայսեր և Սեղբեստրոս պապի կողմից մեծ պատիվների արժանանալը, Հռոմում «Սիրոյ և միաբանութեան» դաշինք կնքելը և Գրիգոր Լուսավորչի Սեղբեստրոսի կողմից ձեռնադրվելը «պատրիարգ Հայոց կամ եպիսկոպոսապետ այսինքն՝ մեծ հայրապետ» ինչպես «աւանդի յազգի մերում»[5]:

«Ծանօթութիւնք յերկրորդ գիրս» բաժնում Միքայել Չամչյանը հատուկ կանգ է առնում «Դաշանց Թղթի» վրա: Նրա եզրակացությունը հետևյալն է. «Նախ՝ թէ այս թուղթ դաշանց ո՛չ է կեղծիք, այլ ճշմարիտ. քանզի օրինակ նորա միշտ դտանիւր յազգի մերում, նաև յաւուրս Խորենացւոյն ... Նաև Խորենացին իսկ անտի առնու ըստ մասին զպատմութիւն սրբոյ կուսին Նունեայ... Արդ՝ ի կարգի պատմութեան Ագաթանգեղոսի ոչ գտանի այսպիսի բան վասն Նունեայ, այլ միայն համառօտիւ ի թղթին դաշանց: Սոյնպէս և ի յիշել Խորենացւոյն զմկրտիլ Կոստանդիանոսի, և զերևումն խաչին՝ և այլն, վկայ բերէ և զԱգաթանգեղոս..որ զայդ աւանդէ

---

[3] Այս և հետագա բոլոր ընդգծումները մերն են:

[4] Միքայել Չամչեանց. Պատմութիւն Հայոց. հ. Ա, Վենետիկ, 1784, էջ 10:

[5] Նույն տեղում: Հմմտ. էջ 637:

ի Թուղթն դաշանց»: «Ուրեմն,— ավարտում է իր միտքը,— կայր յառաջն նաև ի ժամանակս Խորենացւոյն այն Թուղթ դաշանց»[6]:

Հարցի քննությանն օժանդակող Մ. Չամչյանի բերած աղբյուրները (Զենոբ Գլակ, Բուզանդ, Խորենացի) իրոք հաստատում են, թե Տրդատ արքայի և Կոստանդին կայսեր միջև պայմանագիր (դաշինք) կնքվել է: Իսկ սրանցից շատ հետո հայ հեղինակները լոկ սրանց ասածն են կրկնում և որոշակի արժեք չեն ներկայացնում:

Վենետիկի Մխիթարյանները «Դաշանց Թուղթը» վավերական փաստաթուղթ չեն համարում: Դեռ Ագաթանգեղոսի Պատմության 1835 թ. հրատարակության առաջաբանում (էջ 14) նշում են, թե այն «խանգարուած է»: Անդրադառնալով Ագաթանգեղոսի Պատմության ձեռագրերին, նրանք գտնում են, որ «Ցանկալի էր և ընթերցուած մի հարաղատ և անխարդախ զբնաւ իսկ խանգարելոյն ղայնորիկ զԹղԹոյ դաշանց, ունել ի հին և ի վավերական Ա. օրինակիս Փարիզեան, յորում չիք գլխովին, որպէս և ոչ ի Բ. օրինակն հնագիր գրեալ ի ՋՂԹ»:

«Դաշանց Թղթին» ավելի մանրամասն անդրադարձել է Մատթեոս Կոստանդնուպոլսեցի արքեպիսկոպոսը (հետագայում Ամենայն Հայոց կաթողիկոս – 1858–1865)[7]: Նրա ընդարձակ հոդվածը որևէ գիտական արժեք չի ներկայացնում, քանզի ըստ էության Միքայել Չամչյանի «Պատմութիւն Հայոց»-ում դրվածի արտագրությունն է:

Մատթեոս վեհափառի ասելով իր «այս աշխատության նպատակը պիտի ըլլա միայն հարազատ բնագրին ստուդությունը հաստատել ցուցանելով արժանահավատ մատենագրաց վկայությամբ, թե կեղծիք չէ այն, այլ ճշմարիտ»[8]: Այս միտքը բառացի վերցված է Մ. Չամչյանից, որը գրել է. «Այս Թուղթ դաշանց ոչ է կեղծիք, այլ ճշմարիտ»[9], այն տարբերությամբ, որ Չամչյանը Տրդատ-Մեծն Կոստանդնի դաշինքին է անդրադառնում և ոչ կիլիկյան շրջանի կեղծիքին: Այնուհետև, նկատի ունենալով այն հանգամանքը, որ մի շարք եվրոպացի մասնագետներ ժխտել են «Դաշանց Թղթի» վավերականությունը, ինքը մտադիր է «օտար ազգաց կարծիքական գրությւններուն տված չփոթությունը մերժելու, և մանավանդ աչառությամբ և կողմնասիրությամբ գրված խոսքերը հերքելու, և ապա ազատամիտ ոգով պիտի քննե զանի»[10]: Ասյա նույն ոգով. «ստուդապատում Դաշանց Թղթոյն վրայով անտեղի կարծիքական խորհրդով և կողմնակցության կրիվք գրվածները և գայթակղությունները կըմերժվին այստեղ»[11]:

Մենք հնարավոր է ուշադրություն չդարձնեինք Մատթեոս վեհափառի հոդվածին, բայց դա արեցինք, քանզի այն մանրամասն քննադատության

---

[6] Նույն տեղում, էջ 642: Հմմտ. էջ 636-637:

[7] Մատթէոս կաթողիկոս Ամենայն Հայոց: Հաստատութիւն ստուգութեան Դաշանց Թղթոյն, զոր Կոստանդիանոս մեծ ինքնակալն Հռովմայ և Ս. Սեղբեստրոս Հայրապետն Հռովմայ տուած են Տրդատ Թագաւորին և Ս. Գրիգոր Լուսաւորիչ Հայրապետին.— «Ճռաքաղ» (այսուհետև «Ճռաքաղ») կրօնական, բանասիրական և ազգային գիտելեաց. Հ. Բ, տետրակ ԺԶ, 1861, էջ 253-260:

[8] Նույն տեղում, էջ 238-239:

[9] Մ. Չ ա մ չ ե ա ն ց. Նշվ. աշխ., էջ 642:

[10] «Ճռաքաղ»; Հ. Բ., տետրակ ԺԵ, էջ 237-238:

[11] Նույն տեղում, էջ 238:

առարկա դարձավ Կարապետ վարդապետ Շահնազարյանցի գրքույկում, ո-րին հետևեցին բազում հետազոտողներ:

Կարապետ Շահնազարյանցը հանդես եկավ առանձին հոդվածով, ապա նաև՝ առանձին գրքույկով, որ լույս տեսավ Փարիզում[12]: Հնարավոր չէ չնկատել այն մտահոգությունն ու տագնապը, որ XIX դ. համակել էր արևմտահայությանը, նախ և առաջ մտավորականությանը: Հռոմի Propaganda Fide-ի, բողոքական հոգևորսությամբ զբաղված միսիոներները վխտում էին երկրում, քայքայում ու մասնատում հայությունը, հեռացնելով, օտարացնելով հայ եկեղեցուց: Խորապես մտահոգվածներից մեկն էր Կարապետ Շահնազարյանցը, որն առանց հապաղելու ամենասուր, կրքոտ քննադատության ենթարկեց Մատթեոս Կոստանդնուպոլսեցու վերը հիշված հոդվածը, նաև բոլոր նրանց, ովքեր «Դաչանց Թուղթը» ստույգ փաստաթուղթ էին համարում[13]: «Դաչանց Թուղթը,– գրում է նա,– ավելի դեղին տենդով բախած ուղեղի ցնորք է, քան թե ճարտար խաբեբայի գյուտ. որ, որչափ թանձրամիտ ռամիկ անձերու պարմանք կպատճառե, այնչափ ալ ավելի՝ կիրթ ճաշակաց վարժ մտաց զզվանք» (էջ 73):

Գալով «Դաչանց Թղթի» լույս աշխարհ գալու ժամանակին, Կ. Շահնազարյանցը գտնում է, որ այն «խաչակրաց ատենի չենք է» (էջ 85-86), իսկ պատճառը՝ «Հայերը Մահմետականներու, Հոյներու նենգութենեն ու կեղեկանքեն զզված՝ նոր բարեկամ փնտռելու պետքը կզգային, մանավանդ երբ իմացան այն ատենի Պապերու անկոպար տիրապետությունը Արևմտեանց վրա: Այս ատենն է, անտարակույս, այն՝ տպեալ Դաչանց թուղթի բուն թվականը» (էջ 86):

Անդրադառնալով աղբյուրի բովանդակությանը, Կ. Շահնազարյանցը վստահ է, որ «Դաչանց Թուղթ»-ը ոչ այլ ինչ է, քան կաթոլիկության և հայադավանության միությունը՝ «միաբանության հավատ» (էջ 5), կրոնական ստրկություն, որում, պարզ է, տուժողը ամեն տեսակետից հայ ժողովուրդն է լինելու: «Կրոնական միաբանության պատրվակավ մեր եկեղեցին որևիցէ եկեղեցվո աղախին» (էջ 57) պիտի լինի:

Կ. Շահնազարյանցին ծայր աստիճան խրտնեցրել է «Դաչանց Թղթի» այն հատվածը, որտեղ նշված է Սեղբեստրոս պապի Գրիգոր Լուսավորչին ցուցաբերած մեծարանքը, ինչ ունիթոռների խաբեությունն համարելով, հավատացած է, որ եթե դա ընդունենք, «կպարտավորիմք մեր կաթողիկոսները Հռոմ ուղարկել միշտ ձեռնադրություն առնելու համար ու մեր ազատ քահանայապետությունը Հռոմա փառամոլ կարդինալներու ծառայական լուծի տակը դնել» (էջ 107-108):

Կ. Շահնազարյանցը «Դաչանց Թուղթ»-ը «միջին դարու անապացույց զրույցք» (էջ 7) է բնորոշում, «ստապաճույճ» (էջ 99), «աղճատաբան» (էջ 73) ու «խայտառակ» (էջ 111): Եվ ավելի որոշակի. «Հիշյալ դաշնագիրը է և պիտի մնա, ըստ մեր դատողության, իբրև կեղծիք Միջին Դարու անգետ,

---

[12] Դաչանց Թղթոյ քննութիւնն ու հերքումը: Արար՝ Կ. վ. Շ ա հ ն ա զ ա ր ե ա ն ց. Պարիս, 1862:

[13] Կ. Շահնազարյանցը համարակալել է «Դաչանց Թղթի» «սուտութիւնները», առաջինից մինչև «երեքտասաներորդ սուտութիւն Դաչանց Թղթոյն» (էջ 99-111): Այսուհետև «Դաչանց Թղթից» կատարված հղումների վերջում, փակագծերի մեջ, նշվում են աղբյուրի էջերը՝ Կ. Շահնազարյանցի հրատարակությունից:

հիվանդոտ և լատինասեր ուղեղաց» (էջ 8-9): «Մեք ... ի սեր ճշմարտության, և պատմությունը, ժամանակագրությունը, աշխարհագրությունը և գրականությունը ձեռքս կսլնդեմք, որ այն խարդախյալ է, ի հետնոց ներմուծյալ է, և ապիկար ամենևին որևիցէ կրիտիքի տոկալ» (էջ 9): Այն «ոչ վինադրություն է, ոչ քաղաքական դաշն, ոչ խաղաղության ուխտ, ոչ առևտրո պայմանագիր, ոչ մարգարեություն, ոչ պատմություն, ոչ աշխարհագրություն, ոչ վկայաբանություն, ոչ դուշակություն, ոչ հայտնություն, ոչ պարգևագիր, այլ անճոռնի անդունդ մը, որու մեջ ամենայն բանի կտորներ կան և ամենևին, ամբողջ բան մը չկա, որու ամեն անուն կպատշաճի, բայց և ոչ մի անուն սեպհական» (էջ 70-71):

Մի հարցում, սակայն, հեղինակը միանգամայն իրավացի է: Այն, որ մինչև կիլիկյան շրջանը, աղբյուրներում (Զենոբ Գլակ, Խորենացի, ավելի ուշ՝ Հովհաննես Դրասխանակերտցի, Ստեփանոս Ասողիկ) հիշվող Տրդատ-Կոստանդին դաշինքում Գրիգոր Լուսավորիչ, Սեղբեստրոս պապ բացակայում են (էջ 65 և հտ.), նրանք մուտք են գործել ավելի ուշ:

Կ. Շահնազարյանցն իր գրքույկում հրատարակում է «Դաշանց Թղթի» մի այլ ընդօրինակ (էջ 11-30), ապա վերահրատարակում Մատթեոս կաթողիկոսի «Ծռաքաղում» լույս տեսած հոդվածը (էջ 31-55), որին անդրադարձանք վերևում, վերջապես հանդես է գալիս այդ հոդվածի ջախջախիչ քննադատությամբ: Հեղինակը չի բացառում «Տրդատի և Կոստանդիանոսի մեջ քաղաքական դաշնադրության մը գոյությունը» (բայց ոչ ելնելով «Դաշանց Թղթից»), «որո պայմանները հավանականաբար պիտի ըլլային 1. Հայոց Տերությունը տարեկան հարկ մը տար Հռոմայեցվոց. 2. անոնք ալ իրենց զորքովը պաշտպանեին Հայաստանը Պարսից դեմ: Ասիկա հայտնի կերևի սրբույն Վրդանիսի, Լուսավորչա որդվոյն, առ Կոստանս կայսր, Մեծ Կոստանտիանոսի որդին, գրած նամակեն» (էջ .67):

Կ. Շահնազարյանցն առանց վարանելու դիմում է Մատթեոս կաթողիկոսին, ասելով. «Առե՛ք Ունիթոռյանց պատրանքը, և կերե՛ք իբրև Լուսավորչի գործ» (էջ 63): Կ. Շահնազարյանցի գրքույկը հանդիսացավ «Դաշանց Թղթի» ստուգությունը հերքող հետագա մասնագետների սեղանի գիրքը, նրանց եզրակացություններն այս կամ այն չափով բխում են այդ գործից: Հենց դա է պատճառը, որ մենք սույն հոդվածում դրան այնքան մեծ տեղ հատկացրինք:

Մաղաքիա արքեպիսկոպոս Օրմանյանը Կ. Շահնազարյանցի ազդեցության տակ փաստորեն կրկնում է նրան: «Դաշանց Թուղթը» մի ամբողջություն համարելով, նա գտնում է, որ այն «հետին դարերու աղավաղ և անկապակից, գրական և լեզվաբանական և ժամանակագրական սխալներով լեցուն գործ մըն է, որ այլևս իրեն համար պաշտպան չունի: Հռոմի աթոռին կողմեն Հայոց աթոռին առանձնաշնորհումներ տրվիլը և անոնց ղորությամբ արևելյան եկեղեցիներու իրավասության փոփոխվիլը, ժամանակին հոգվոյն և սովորության և հարաբերության հետ բոլորովին անհաշտ ենթադրություն մըն է: Գրիգորի մինչև Հռոմ ճանապարհորդություն ընելը, բոլորովին անհիմն ենթադրություն մըն է, որ ոչ մեկ կերպով պատմության հետ չի գոդվիր»: Հեղինակը, ինչպես պիտի տեսնենք, միանգամայն ճիշտ, ցույց է տալիս, որ «Հայոց թագավորությունը իր հարաբե-

*րությունները կը պահեր ուղղակի Արևելքի կայսրներուն հետ, և Արևմուտքի հետ հարաբերություն չուներ, իսկ Կոստանդիանոս 323-են ետքը սկսավ Արևելքի մեջ իշխել, մինչև այն ատեն Լիկինիոս էր իշխողը:... Ավելցնենք նաև որ 323-են ետքը Կոստանդիանոս Հռոմն ալ սկսած էր լքել. և զինքն այնտեղ երթալու փնտռելու հարմարություն ալ կը պակսեր»:*

*Մ. արք. Օրմանյանը խորամուխ դառնալով, գրում է, թե «նկատողության արժանի է որ Խորենացին Ագաթանգեղոսի Պատմությունը առջևն ունենալով իսկ, Գրիգորի ճանապարհորդելը չէ գրած, որով կամ զայն կեղակարծ դատած է, և կամ ուղևորության հատվածը հետո Ագաթանգեղոսի մեջ ներմուծված է»: Հեղինակը պաշտպանում է այն կարծիքը, որ պարզապես շփոթված է Տրդատ III-ը Տրդատ I-ի հետ, որ Ներոնի օրոք իրոք այցելել է Հռոմ:*

*Ավարտելով «Դաշանց թղթի» վերաբերյալ իր դատողությունները, Մ. արք. Օրմանյանը գրում է. «Դաշանց Թուղթին հերյուրվածը, հայկական բարեմիտ նենգություն մըն է Խաչակիրներու ժամանակ կազմված, երբոր Անտիոքի լատին պատրիարքներ, Կիլիկիո նույն աթոռին գավառներեն մին լինելեն առիթ առնելով, Հայոց հայրապետության վրա իշխելու փորձեր ըրին: Հայեր չուզեցին ուղղակի Լատիններուն դիմադրություն ցուցուցած ըլլալ, և մտածեցին Հայոց աթոռին ազատությունը Հռոմի պապերուն կամքով եղած ցուցնել, որով թե Լատինաց բարեկամութենեն սպասված օգնությունը պիտի չկորսնցնեին, և թե իրենց ազատ հայրապետությունը պաշտպանած պիտի ըլլային: Հայտնի է ուրեմն որ ոչ Գրիգոր և ոչ Տրդատ Հռոմ չեն գացած, և Սեղբեստրոսի վերագրված տվուչությունը անհիմն հերյուրված մըն է»[14]:*

*Միանգամայն առողջ ու ընդունելի համարելով անվանի հեղինակի միտքը, թե «Դաշանց Թուղթը» «հայերի բարեմիտ նենգություն մըն է», սակայն ոչ «Հայոց աթոռի ազատությունը» Անտիոքի լատին պատրիարքների ոտնձգություններից պաշտպանելու համար: Այդ մասին մանրամասն կասվի ստորև:*

*«Դաշանց Թղթին» առանձին գլուխ է նվիրել ակադ.* Աշ. Հովհաննիսյան*ն իր մեծարժեք երկհատոր աշխատության մեջ[15]: Նա այն հեղինակներից է, որ խորագույնս ընդգծեց Կ. Շահնազարյանցի «Դաշանց Թղթի» լույս աշխարհ գալն ունիթոռական շարժման հետ կապելու տեսակետը: «Փաստապես Թղթի անվավերականությունը,– գրում է նա,– վաղուց արդեն նշված է ու մերկացված»[16]: Աղբյուրը նա որակում է որպես «Կիլիկիայում արծարծված միաբանողական և խաչակրական պրոպագանդայի շիկացած մթնոլորտում խմբագրված ապոկրիֆ»[17], որը «դառնալու էր սլապական եկեղեցու ունիվերսալ հավակնությունները և Հայ-Հռոմեական եկեղե-*

---

*[14] Մ. արք. Օ ր մ ա ն ե ա ն. Ազգապատում. հ. Ա.– «Էջմիածին», 2001, սյունակ 113-115:*

*[15] Ա. Հ ո վ հ ա ն ն ի ս յ ա ն. Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության. հ. Ա, Երևան, 1957:*

*[16] Նույն տեղում, էջ 67:*

*[17] Նույն տեղում, էջ 75:*

ցական միությունը հիմնավորող ագիտացիոն միջոցներից մեկը»[18]: «Միայն կեղծ, խաբուսիկ ու միտումնավոր մի Թուղթ կարող էր շաղկապել Հայ եկեղեցու սկզբնավորման պատմությունը Հռոմի հետ, ընդսմին տիեզերական եկեղեցու մեջ վերագրելով Հայ եկեղեցուն այնպիսի մի դիրք, որպիսին նա ունեցած չէ երբեք»[19]: «Այն կառուցված է «աստվածընտիր ժողովրդի», ներկա դեպքում Հռոմի՝ գերիշխանության, նրա տիեզերական եկեղեցապետության գաղափարի վրա»[20]: Աշ. Հովհաննիսյանը խնդրո առարկա աղբյուրը համարում է «հերյուրանք», որը գալիս է «հիմնավորելու» և «վավերականացնելու» հայ-հռոմեական կողմնորոշման հետ լծորդված պահանջներն ու սպասումները»[21]: Որոշակիացնելով «Դաշանց Թղթի» լույս աշխարհ գալու ժամանակը, Աշ. Հովհաննիսյանը այն համարում է III և IV խաչակրությունների ժամանակը, որոնց հետ էին կապում հայերն իրենց փրկությունը[22], որ «Դաշանց Թղթի» անհայտ հեղինակը փաստապես արծարծում էր XII-XIII դդ. պատմական սահմանագծի վրա հուզված թեոկրատական իդեաներն ու ակնկալությունները: «Դաշանց Թղթի» Լուսավորիչ կամ Տրդատ, Սեղբեստրոս կամ Կոստանդինոս անունները անհայտ հեղինակի համար ժամանակակից Գրիգոր Ապիրատի և Լևոն Ռուբինյանի[23], Ինոկենտիոս պապի և «ալաման» կայսրի կեղծանուններն էին պարզապես»[24]: «Դաշանց Թղթի» գաղափարական առանցքը կազմում են միսիոներական-թեոկրատական այն իդեաները, որոնց բուն ջերմոցը Ինոկենտիոս III-ի Հռոմն էր»[25]:

«Դաշանց Թուղթը» համարելով մի ամբողջություն, Աշ. Հովհաննիսյանը կանգ է առնում Տրդատի և Կոստանդնի դաշինքի հարցի վրա և եզրակացնում, որ «դաշինքի պատմությունն այլ ինչ չէր, քան քրիստոնեացած մի զրույց հանդիսավոր այն ընդունելության մասին, որին մեր թվականության առաջին դարում արժանացել էր հեթանոս Տրդատ I-ը, քրիստոնեահալած Ներոն կայսրի կողմից»[26]:

«Դաշանց Թուղթը» ուսումնասիրել է նաև Հ. Ս. Անասյանը, XVII դ. արևմտահայ ազատագրական շարժման ղեկավարների Արևմուտքից սպասվող օգնության և խաչակրաց նոր արշավանքների ակնկալիքների առնչությամբ: Նա ցույց է տալիս, որ լատինական կողմնորոշումը հայ հասարակական կյանքում նոր չէր, այն կազմվել էր դեռևս XI-XIII դդ., երբ, ըստ Հ. Անասյանի, երևան եկավ «մի գրական ստեղծագործություն, որը «Դաշանց Թուղթ» էր կոչվում, և «վկայում էր» հայ-հռոմեական հին

[18] Նույն տեղում, էջ 74:
[19] Նույն տեղում, էջ 70:
[20] Նույն տեղում, էջ 69:
[21] Նույն տեղում, էջ 74-75:
[22] Նույն տեղում, էջ 65:
[23] Ինչպես կտեսնենք ստորև, Աշ. Հովհաննիսյանի դիտողությունը, թե ի դեմս Լուսավորիչ-Տրդատ զույգի մենք ունենք Գրիգոր Ապիրատ կաթողիկոսին և Լևոն II Ռուբինյան թագավորին (բայց ամենևին ոչ Ինոկենտիոս պապին և «ալաման» կայսրին, ինչպես նա կարծում է), հանճարեղ է, հակառակ այն բանին, որ մենք հայոց արքային և Լուսավորչին առնչվող խնդրին այլ բացատրություն ենք տալիս:
[24] Ա. Հ ո վ հ ա ն ն ի ս յ ա ն. Նշվ. աշխ., էջ 75:
[25] Նույն տեղում, էջ 79:
[26] Նույն տեղում, էջ 68:

բարեկամության մասին, որպես պատճենը հանդես գալով նույնինքն այն քաղաքական ու կրոնական դաշնագրի, որն իբրև թե IV դարի սկզբներին կնքվել էր մի կողմից Հռոմի Կոստանդիանոս Մեծ թագավորի ու Սեղբեստրոս պապի, իսկ մյուս կողմից հայոց Տրդատ թագավորի ու Գրիգոր Լուսավորիչ հայրապետի միջև»: «Այս «վավերագիրը», շարունակում է հեղինակը, «որն իր հայտնի քննադատի կողմից[27] անվանվում է հայերի և լատինների մերձեցումն ու փոխադարձ համակրանքը զորացնելու համար հնարված մի «բարեպաշտական խաբեություն», բայց որն ավելի ճիշտ կլիներ անվանել կիլիկյան շրջանում լատինասեր հոսանքի կողմից եվրոպական ազդեցությունն ամրապնդելու նպատակով հնարված մի գրական կեղծիք, մեծ ժողովրդականություն էր շահել հետագա դարերում բարեկամության և արտաքին օգնության կարիքն զգացող հայ քաղաքական շրջաններում և այդ պատճառով բազմաթիվ օրինակներով ողողել էր հրապարակը»[28]:

Վերջերս «Դաշանց թղթին» նվիրված չորս հոդված է լույս տեսել, որոնցից երկուսը պատկանում են հայագետ Ռոբերտ Վ. Թոմսոնի գրչին: Առաջինը կրում է «Կոստանդինն ու Տրդատը հայկական ավանդության մեջ»[29] խորագիրը: Անդրադառնալով հայոց արքա Տրդատ III-ի Կոստանդին կայսերը կատարած այցելության ավանդությանը, հոդվածագիրը ցույց է տալիս, որ այդ պատմությունը պարզ չէ, և նշում առանձին հետազոտողների կարծիքն այն մասին, որ հավանաբար այն չփոթված է դրանից 250 տարի առաջ Տրդատ I-ի Ներոն կայսրին կատարած այցելության հետ: Հեղինակը մանրամասն, մեկ առ մեկ, անդրադառնում է միջնադարյան հայ պատմիչների տվյալներին, որոնք հիշատակում են (կամ չեն հիշատակում) հայոց արքա Տրդատ III-ի և Գրիգոր Լուսավորչի այցելությունը Հռոմ և նրանց փառավոր ընդունելությունը Կոստանդին Մեծի և Հռոմի պապ Սեղբեստրոսի (կամ Եվսեբիոսի) կողմից, ինչպես նաև Կոստանդնի և Տրդատի միջև կնքված դաշինքը:

Շարունակության մեջ Թոմսոնը անդրադառնում է կիլիկյան շրջանին, XII–XIII դդ., երբ հայերը շփման մեջ են մտնում խաչակիրների հետ և, ըստ նրա, հայոց միությունը Բյուզանդիայի հետ դառնում է պակաս կարևոր, քան հարաբերությունների հաստատումը պապականության հետ: Տրդատ-Կոստանդին պատմությանն ավելանում է երկու նոր երևույթ. «Դաշանց թղթում» Գրիգոր Լուսավորչի հանդես գալը որպես քրիստոնյա աշխարհի անկախ թևի պատրիարք, և Երուսաղեմի սուրբ վայրերի վրա հայոց վերահսկողության փաստարկումը: Աղբյուրում Տրդատի՝ Կոստանդնի նկատմամբ ունեցած նախապատվությունը անտեսված է, իսկ պապի առաջնայնությունն ավելի ընդգծված: «Դաշանց թղթում» դեպքերը նկարագրվում են հռոմեամետ տեսանկյունից: Այդպիսի նոր գաղափարների անդրադարձը Թոմսոնը գտնում է ամենից առաջ Կիրակոս Գանձակեցու

---

[27] Նկատի ունի Կ. Շահնազարյանցի գրքույկը.

[28] Հ. Ս. Ա ն ա ս յ ա ն. նշվ. աշխ., էջ 50-51: Հեղինակին հայտնի են միայն Մաշտոցի անվան Մատենադարանում պահվող 1322 թ. XVII դ. ներառյալ արտագրված երեք տասնյակ օրինակներ:

[29] R o b e r t W. T h o m s o n. Constantine and Trdat in Armenian Tradition.– "Acta Orientalia Academiae Scientiarum Hungariae". T. L (1-3), Budapest, 1997, p. 277-289.

մոտ[30]: Բայց պետք է նշենք, որ Կիրակոս Գանձակեցու մոտ հիշյալ գաղափարի սոսկ անդրադարձի չէ, որ հանդիպում ենք, այլ «Դաշանց Թղթից» կատարված, կարելի է ասել՝ բառացի արտագրության: Բերենք մի քանի ակնառու օրինակներ.

Դ.Թ. «կենդանի վկայն Քրիստոսի եւ մեծ խոստովանողն» (էջ 12)

Կ.Գ. «որպէս խոստովանողի եւ առաքելաշնորհ վկայի Քրիստոսի» (էջ 11)

Դ.Թ. «ուխտ եւ դաշինս հաստատեցաք» (էջ 14)

Կ.Գ. «դնել ուխտս եւ դաշինս ի մէջ իւրեանց» (էջ 11)

Դ.Թ. «տալով նմա (Գրիգորին) ... նաև զբժշկաբաշխ ձեռն բազկօքն հանդերձ երկոցունց առաքելոց Պետրոսի եւ Պօղոսի» (էջ 27)

Կ.Գ. «տան նմա և մասն ինչ ի նշխարաց առաքելոցն, եւ զահեակ ձեռն Անդրէի առաքելոյ» (էջ 11)

Դ.Թ. «պատրաստեցի և տեղի սպատարագի սրբոյն Գրիգորի ի Յարութեան մեծի եկեղեցւոյն զԳողգոթայ զխաչելութեանն և զսնարից զուպայն և զմիջի կանթեղն մշտավառ» (էջ 28)

Կ.Դ. «և այլ ընծայս բազումս և յԵրուսաղէմ զԳողգոթայ՝ զտեղի խաչելութեանն Քրիստոսի, և սուրբ Յակովբն, և տեղի մի սպատարագի ի սնարս սուրբ Յարութեան: Ասեն կախեաց կանթեղ մի սուրբ Գրիգոր ի վերայ գերեզմանին Քրիստոսի» (էջ 11):

Կիրակոս Գանձակեցու կողմից «Դաշանց Թղթին» ծանոթ լինելը անսպասելի չպիտի լիներ: Պատմիչը նախ Վարդենիս գյուղում 1255 թ. անձամբ հանդիպել է մոնղոլների մոտից վերադարձող Հեթում թագավորին, այսինքն կարող էր նրանից տվյալներ քաղած լինել, սակայն ունենք փաստ, որ Գանձակեցին աշխատել է Կիլիկիայի Սիս քաղաքում: Այստեղ 1269 թ. հորինած «Յայսմաւուրքում» ասված է. «Եղև իրականութիւնս այս ի թուիս ՉԺԸ (1269), յաշխարհիս Կիլիկեցւոց ի Սիս մայրաքաղաքի, ի թագաւորութեան Հեթմոյ, եւ յառաջին ամի իշխանորդոյ նորին Լևոնի» (էջ Թ), այսինքն կարող էր «Դաշանց Թուղթը» ձեռքի տակ ունենալ:

Հոդվածի վերջում, նշելով, որ իրադրությունը նախախաչակրաց ժամանակաշրջանի համեմատությամբ խստիվ փոփոխվել էր, Թոմսոնը համառոտում է «Դաշանց Թղթի» բովանդակությունը:

- Հռոմի եպիսկոպոս Եվսեբիոսը նույնանում է Սեղբեստրոսի հետ, երկու անունները վերաբերում են միևնույն անձին:
- Տրդատն ու Լուսավորիչը գնում են Հռոմ ոչ թե Կոստանդնին շնորհավորելու, այլ սուրբ վայրերը և մասունքներն այցելելու համար:
- Հաստատվում, որ Գրիգոր Լուսավորիչը ընդգծում է պապի դերակայությունը:
- Կոստանդինը դրավոր ուղերձ է հղում համայն Արևելք, հայտարարելով, որ ինքը Տրդատին համարում է իր կայսրության երկրորդ դեմքը, Արևելքի կառավարիչների գլխավորը, որն օգնում է իրեն պարսից արքայից արքայի դեմ մղվող պատերազմում:
- Գծվում են Տրդատ արքայի պետության տարածքի սահմանները:

---

[30] Նույն տեղում, էջ 285: Կ ի ր ա կ ո ս Գ ա ն ձ ա կ ե ց ի. Պատմություն Հայոց (աշխատասիրությամբ Կ. Ա. Մելիք-Օհանջանյանի). Երևան, 1961, էջ 11:

❑ Վերջին ժամանակներում Հայաստանը հանդիպելու է փորձության և նրան օգնության են հասնելու Կոստանդին կայսեր հետնորդները:

❑ Գերագույն պապ Սեղբեստրոսը Գրիգոր կաթողիկոսին նշանակում է Մեծ Հայքի անկախ և ինքնիշխան պատրիարք և վերադաս վրաց և աղվանից կաթողիկոսների:

Գալով «Դաշանց թղթի» (Թոմսոնի բնորոշմամբ՝ էդիկտի) կազմողներին, հոդվածագիրը նշում է, թե «այն գրվել է Կոստանդնի, իսկ կնքվել Սեղբեստրոսի կողմից»: Սակայն բնագրում այլ է. «Այս գիր ... գրեցաւ հրամանաւ մերով Կոստանդեայ կայսեր և Սեղբեստրոս պապի ... և արքունական մատանեաւ մերով կնքեալ և ստորագրեալ», այսինքն կնքողն ու ստորագրողը Կոստանդին կայսրն է:

Ռ. Թոմսոնը «Դաշանց թղթին» անդրադառնում է մի քանի տարի անց հրատարակած «Խաչակիրները հայոց աչքով»[31] հոդվածում: Նա սեղմ գծերով կրկնում է իր նախորդ հոդվածի բովանդակությունը: Տարբերությունն այն է, որ այստեղ նա արդեն ենթադրաբար փաստաթուղթը համարում է ֆրանսերեն բնագրից թարգմանություն: «Այն հաստատ արևմտամետ փաստաթուղթ է, Կիլիկյան Հայաստանի ծայրահեղ արևմտամետ կուսակցության ներկայացրած...»[32]: Համոզված ենք հակառակը՝ դա հայերեն բնագրից կատարված ֆրանսերեն թարգմանություն էր (ֆրանսերեն թարգմանությունը չի պահպանված), կատարված հատուկ նպատակով, ոչ «Կիլիկյան Հայաստանի ծայրահեղ հռոմեամետ կուսակցության», այլ ընդհակառակը՝ «ծայրահեղ» հայամետ իշխանությունների: Այդ մասին մանրամասն ստորև:

«Դաշանց թղթի» վերաբերյալ իր նկատառումները Ռ. Թոմսոնը մեկ նախադասությամբ տվել էր իր «Հայկական դասական գրականության մատենագիտությունը մինչև մ.թ. 1500 թ.» գրքում, ուր գրել է, թե դա «XII կամ XIII դ. մի կեղծիք է, հավանաբար լատիներեն բնագրից մի թարգմանություն, որ նկարագրում է հայոց և հռոմայեցիների միջև կնքված դաշնադրությունը՝ Տրդատ արքայի և սուրբ Գրիգորի Կոստանդին կայսրին և Սեղբեստրոս պապին կատարած այցելության ժամանակ (դա հաճախ հանդես է գալիս որպես Ագաթանգեղոսի Պատմության հավելված»[33]:

Իտալահայ հայագետ Գաբրիելլա Ուլուհոջյանը «Թուղթ սիրո և միության» Կոստանդին Մեծին վերաբերող մի ուշ հայերեն ապոկրիֆ»[34] (պարականոն գրություն) հոդվածում, նկատի ունենալով իր իտալացի ընթերցողներին, աղբյուրի մասին մանրամասն տեղեկություններ է տալիս՝ հատվածաբար բերելով նաև դրանց իտալերեն թարգմանությունը:

---

[31] R. W. T h o m s o n. The Crusaders through Armenian Eyes.– In: «The Crusades from the Perspective of Byzantium and the Muslim World». Dumbarton Oaks. Trustees for Harvard University, Washington D.C., 2001.

[32] Նույն տեղում, էջ 77:

[33] R. W. T h o m s o n. A Bibliography of Classical Armenian Literature to 1500 AD. Brepolis - Thurnhout, 1995, p. 149.

[34] G a b r i e l l a U l u h o g i a n. Un tardo apocrifo armeno relativo a Costantino il Grande. La Lettera dell ' amicia e dell' unione – In: "Costantino il Grande nell' eta bizantina". Atti del Convegno Internazionale (Ravenna 5-10 Aprile 2001) in Bizantinistica. Rivista di Studi Bizantini e Slavi, 2004, № 5.

Հոդվածագիրը, հետևելով Մարի-Լուիզ Շոմոնին, բացառում է քրիստոնյա Տրդատ III-ի այցը Հռոմ, ընդունում դիտության մեջ հայտնված կարծիքը, թե Տրդատ III-ին է վերագրված Տրդատ I-ի այցելությունը Հռոմ Ներոն կայսեր ժամանակ (64 թ.): Նշելով «Դաշանց Թղթի» բազմապիսի աղբյուրներից կազմված լինելը, նա կանգ է առնում Գրիգոր Լուսավորչի Հռոմում Սեղբեստրոս պապի կողմից սրբագործվելու ժամանակ տեղի ունեցած հրաշքի վրա, դրա զուգահեռը տեսնում Ներսես Ա կաթողիկոսի հետ Կեսարիայում կատարված հրաշքի, հիշատակված Փավստոս Բուզանդի կողմից, իսկ վերջինիս զուգահեռն էլ՝ Ս. Բարսեղի կենսագրության մեջ: Հեղինակը գտնում է, որ «Դաշանց Թղթում» խոսվում է հայոց գլխին ապագայում գալիք փորձությունների, Կոստանդին կայսեր ժառանգներից նրանց հասնելիք օգնության և փրկության մասին: Համարելով աղբյուրը հետագա դարերի ստեղծագործություն, նա չի ժխտում գրանում վաղ շրջանի հետքերի առկայությունը: Անդրադառնալով Կիրակոս Գանձակեցու պատմական երկին, Գ. Ուլուհոջյանը ցույց է տալիս, որ նրանում «Դաշանց Թղթից» բառացի մեջբերումներ կան:

Գ. Ուլուհոջյանը ցույց է տալիս, որ XII-XIII դդ. Կիլիկիայի հայկական պետությունը Հռոմի հետ դիվանագիտական սերտ հարաբերություններ էր հաստատել: Նրա կարծիքով XII դ. հայ-հռոմեական եկեղեցիների միության հարցն առաջնահերթ էր դարձել, նա համոզված էր, որ եկեղեցիների միությանը ձգտում էին Ներսես Շնորհալին, Գրիգոր Տղան, Գրիգոր Ապիրատը, Ներսես Լամբրոնացին, թեև, ըստ մեզ, այդ «ձգտումները» երևութական էին:

«Դաշանց Թղթի» նորագույն հետազոտությունը պատկանում է Մանյա (Լյուսա) Շիրինյանի գրչին: Իր «Թուղթ սիրո և միաբանության» Հռոմի և Հայաստանի միջև. Խաչակրաց շրջանից կեղծիքի մի օրինակ»[35] ընդարձակ հոդվածում հեղինակը նախ և առաջ անդրադառնում է աղբյուրի ստեղծման ժամանակին, ցույց տալիս, որ թեև դրա առաջին հրատարակության մեջ (չդիտես ինչի հիման վրա) այն գրված է համարվում 316 թ., ուսումնասիրողները համամիտ են, որ դա կեղծիք է, հավանաբար գրված XI–XIII դդ., կիլիկյան միաբանական միջավայրում: Այդ կարծիքը նա, իմիջիայլոց, հաստատում է «Դաշանց Թղթում» հայոց արքայի Կոստանդնի կողմից «ֆրեր» (եղբայր) անվանված լինելու փաստով: «Թերևս միայն «ֆրեր» ֆրանսերեն բառը,– գրում է նա,– որը միակը չէ այս տեքստում, բավական է դրության ուշ ժամանակի մասին գաղափար կազմելու համար»[36]:

Մ. Շիրինյանը համանման բովանդակություն է նկատում «Դաշանց Թղթի» և մի այլ «կեղծ փաստաթղթի»՝ Donatio Constantini-ի մեջ, չնայած վերջինում հայկական նյութը բացակայում է: Նա «Դաշանց Թղթում» տեսնում է Հռոմի առաջնությունը փառաբանելու գաղափարը, գտնում, որ

---

[35] M. E. S h i r i n i a n. "The Letter of Love and Concord" between Rome and Armenia. A Case of Forgery from the Crusaders Period. Orientalia Lovaniensia Analecta, 125. East and West in the Crusader States, Context -Contacts -Confrontations, III, edited by K. Ciggaar and H. Teule, Leuven, 2003, p. 79-99. Այստեղ մեր պարտք ենք համարում խորին շնորհակալություն հայտնել հոդվածագրին իր, ինչպես և Թոմսոնի և Գ. Ուլուհոջյանի մեզ համար ոչմատչելի հոդվածների առանձնատիպերը տրամադրելու համար:

[36] Նույն տեղում, էջ 85:

*այդ երկու «կեղծ գրվածքների նպատակն էր ապացուցել, որ կազմված են* IV *դարի սկզբում»*[37]*:*

*Մ. Շիրինյանը «Դաշանց Թղթի» բովանդակությունը համարում է Ագաթանգեղոսի «Պատմության» համապատասխան հատվածի «ավելի ճոխացված» տարբերակը, առաջինում նկատելով Հռոմի պապի ավելի չեշտված փառաբանությունը: Երկար տարիներ մանրակրկիտ ուսումնասիրած լինելով «Վարք Սեղբեստրոսի» խորագիրը կրող աղբյուրը, նա համոզիչ կերպով ցույց է տալիս այն ակնհայտ աղերսները, որ առկա են այդ երկու աղբյուրների միջև, որ «Դաշանց Թղթի» հեղինակը օգտվել է թե՛ Սեղբեստրոսի Վարքի հունարեն բնագրից, թե՛* Donatio Constantini-*ից:*

*Մ. Շիրինյանը եզրակացնում է, որ «Դաշանց Թղթի» քննությունը պետք է տարվի ոչ միայն հայկական աղբյուրների շրջանակում, այլ ավելի լայն համատեքստում, ներգրավելով այլ կեղծ գրվածքներ ևս»*[38]*: Հեղինակը անտարակույս ճիշտ է այն հարցում, որ պետք է ներգրավել օտար աղբյուրներ, բայց ինչպես կտեսնենք ստորև, շատ ավելի մեծ օգուտ են տալիս ոչ թե կեղծ, այլ ճշմարտախոս, վստահելի գրվածքները: Հոդվածագիրը Եվսեբիոս Կեսարացու այն տվյալների հիման վրա, համաձայն որոնց, օտարերկրացի վեհապետների այցելություններ կայսեր մոտ լինում էին, չի բացառում, որ հայ բարձրաստիճան անձանց այցելություններ Հռոմ նույնպես տեղի էին ունենում: Ուստի «այնուամենայնիվ արդարացի է մտածել, որ այս ավանդության մեջ հենքը վավերական է, և չորրորդ դարի սկզբի Տրդատ Թագավորի և Գրիգոր Լուսավորչի այցը Հռոմ պատմական տեղեկություն է»*[39]*:*

* * *

*Բոլոր ուսումնասիրողները, ովքեր «Դաշանց Թուղթը» համարում են սկզբից_մինչև վերջ կեղծիք, կատարված «լատինամոլ», «լատինասեր», անգամ_ունիթոռական կողմնորոշում ունեցող անձի կողմից, չեշտը դնում են աղբյուրի այն տեղերի վրա, որոնցում գերադասվում է հռոմեական կայսրը, իրենց կարծիքով ընդգծվում Հռոմի պապի գերակայությունը, ձգտումը հայոց եկեղեցին ենթարկելու Հռոմին, մի խոսքով հայերին կաթոլիկացնելու մեջ: Նրանք նման խնդիր չեն տեսնում «Դաշանց Թղթի» այն հատվածներում, որոնք հակառակն են փաստում, շատ բարձր դիրք հատկացնում հայոց թագավորին ու եկեղեցուն, եթե անգամ նկատում են, դա համարում են սոսկ կեղծիք, մի բան, որ իրականում այդպես չէ:*

## Ա) «Դաշանց Թուղթը» լատինամե՞տ է, թե՞ հայամետ

*Այստեղ պարտավոր ենք նախ նշել «Դաշանց Թղթի» Հռոմի «օգտին» վկայող տվյալները: Նախ՝ քաղաքական հարցում.*

*1) «Ինքնակալ և մշտայաղթ կայսր Կոստանդիանոս մեծ և օգոստոսափառ թագաւորաց թագաւոր» (էջ 11-12):*

---

[37] *Նույն տեղում, էջ 79:*

[38] *Նույն տեղում, էջ 87:*

[39] *Նույն տեղում, էջ 92:*

2) «Տիեզերատարած և աշխարհածաւալ, խրոխտ և անխոնարհելի իշխանութիւն Հռովմայեցւոց» (էջ 12):

3) «զՏրդատ յԱրևելս կացուցաք (Կոստանդիանոս կայսրը – Հ. Բ.) իշխել տիրաբար բոլոր աշխարհիս» (էջ 16):

4) Հայոց «փրկութիւն ի Տեառնէ եղիցի և օգնութիւն յազգատոհմէ իմմէ (Կոստանդին կայսեր – Հ. Բ.): Բայց այս եղիցի ի ժամանակս յետինս»: (էջ 19):

Այսքանը հռոմայեցիների կայսրի և հռոմայեցիների մասին:

Առաջին և երկրորդ կետերը համապատասխանում են իրականության: Այդպիսին էր, գոնե իրենք հռոմայեցիներն այդպիսին էին համարում իրենց կայսրությունն ու սեփական կայսրին: Չորրորդ կետը ևս համապատասխանում է իրականության: Խաչակրաց արշավանքների սկզբնական շրջանում օտարի լծի տակ հեծող հայ ժողովուրդը փրկության հույսեր էր կապում Արևմուտքից արշավող քրիստոնյա ասպետների ու թագավորների հետ: Խաչակիրները, գրում է Մատթեոս Ուռհայեցին, «գային յօգնութիւն քրիստոնէից և առ փրկել յայլազգեաց զսուրբ քաղաքն Երուսաղէմ և ազատել ի Տաճկաց զսուրբ Գերեզմանն աստուածընկալ»[40]:

Երրորդ կետում ասվածը, որ ոմանք համարում են Հռոմեական կայսրության կողմից ոտնձգություն հայոց անկախ պետականության դեմ, ունի իր բացատրությունը: 298 թ. Արշակունյաց Հայաստանն ընկել էր Հռոմի ազդեցության տակ: «Սասանյանների կողմից ցնցված հայ Արշակունիների դահը հռոմայեցիների օգնությամբ նորից վերականգնվեց Մեծ Հայքում: Այդ ժամանակվանից սկսած Հայաստանն ընկավ կայսրերի քաղաքական ազդեցության տակ կամ, ինչպես պատմագիրն է արտահայտվում (Ամմիանոս Մարկելլինոսը – Հ. Բ.), գարձավ juri Romano obnoxia և սկսեց օգտվել նրանց հովանավորությունից»[41]:

Անցնենք «Դաշանց Թղթում» Հռոմի պապի մասին ասվածին:

1) «Ստորագրեցաւ հրովարտակս հրամանաւ իմով մեծի Պապուս Հռովմայեցւոց Եւսեբիոսի, որ և Սեղբեստրոս, աթոռակալ գլխաւորաց Առաքելոցս Պետրոսի և Պօղոսի, որ երկնաւոր և երկրաւոր բանալեօքս ունիմ իշխանութիւն յԱրևմտից մինչև յԱրևելս ի վերայ ամենայն ազգաց և ազանց և լեզուաց քրիստոսադաւանից, կապօղ և արձակօղ ի յերկինս և յերկրի և հրամանահան հզօր յընդհանուր յեկեղեցիս Քրիստոսի» (էջ 12):

2) «Փոխանորդի նոցա պատուեալ պապիս»[42]:

3) «Ես ինքնադլուխ պատապապս Սեղբեստրոս և ամենայն աշխարհի» (էջ 24):

Ուսումնասիրողների համար գայթակղության քար է դարձել Սեղբեստրոս պապի «ունիմ իշխանութիւն յԱրևմտից մինչև յԱրևելս» հայտարարությունը, որ իբր «Արևելքի» տակ ենթադրվում է նաև Հայաստանը,

---

[40] Մատթէոսի Ուռհայեցւոյ ժամանակագրութիւն. Վաղարշապատ, 1898, էջ 254:

[41] Ն. Ա դ ո ն ց. Հայաստանը Հուստինիանոսի ժամանակաշրջանում: Քաղաքական կացությունը ըստ նախարարական կարգերի (ռուս. թարգմ. Ա. Թ. Խոնդկարյանը և Է. Հ. Խոնդկարյանը). Երևան, 1987, էջ 103-104:

[42] Այսինքն Պետրոս և Պողոս Առաքյալների: Այսպես է ըստ «Դաշանց Թղթի» 1709 թ. հրատարակության: Կ. Շահնազարյանցի հրատարակած բնագրում «Փոխանորդի Աստուծոյ» (էջ 12):

ուստի Հռոմի պապը ոտնձգություն է կատարում հայոց անկախ եկեղեցու նկատմամբ, անտեսելով հենց «Դաշանց Թղթում» դրվածը, որի համաձայն Սեղբեստրոս պապը գրել է ընդհանրական հրովարտակներ «առ Աւետարանչացն աթոռակալ պատրիարքունս որ յԱրեւելս», այսինքն՝ Անտիոքի, Երուսաղեմի և Ալեքսանդրիայի: Գայթակղության քար է նաև նույն պապի հայտարարությունը, թե նա հանդիսանում է «հրամանահան հզօր ընդհանուր յեկեղեցիս Քրիստոսի», որի տակ ուսումնասիրողները ներառում են և հայոց եկեղեցին: Բայց դա իրականությանը չի համապատասխանում: «Արեւելք» ասելով նա նկատի ունի Արևելքի երեք պատրիարքությունները՝ Անտիոքի, Երուսաղեմի և Ալեքսանդրիայի, իսկ «ընդհանուր յեկեղեցիս Քրիստոսի» դա ամենևին էլ չի նշանակում համայն աշխարհի եկեղեցիներ: «Ընդհանուր» բառը հունարեն καθολική - կաթողիկե բառի հայերեն թարգմանությունն է: Ուստի «ընդհանուր եկեղեցի» նշանակում է կաթոլիկ դավանության հռոմեադավան (հարկավ ոչ IV դ.) աշխարհը: Բայց իրականություն չէ՞, որ տիեզերական եկեղեցիների շարքում (Հռոմ, Կոստանդնուպոլիս, Անտիոք, Երուսաղեմ, Ալեքսանդրիա) Հռոմի եկեղեցին և նրա պապը, մինչ Փոտ պատրիարքի կողմից հարաբերությունների խզումը (սքիզմա) և Հռոմի եկեղեցու հեգեմոնիայից բյուզանդական եկեղեցու ձերբազատումը, առաջինն էր համարվում (տե՛ս տիեզերական ժողովների կանոնները): Փոտը 867 թ. վճռականորեն մերժեց Հռոմի պապի առաջնությունը[43]:

Այժմ անդրադառնանք «Դաշանց Թղթի» հայոց «օգտին» վկայող փաստերին: Նախ և առաջ քաղաքական հարցին, այն է՝ հայոց պետականության ու նրա վեհապետի:

1) Արշակունյաց (ինքնըստինքյան նաև Տրդատի) «աշխարհակալ և տիեզերասաստ արքայից արքայութիւն» (էջ 12):

2) «Եւ եկեալ ի պաղատն պանծալի բազմեցաք. արքայքս (Տրդատն ու Կոստանդինը – Հ. Բ.) ի միում բարձրաբերձ բազմականի» (էջ 13):

3) «Բազկակից եղբայր մեր (Կոստանդին Մեծի – Հ. Բ.) Տրդատ արքայ» (էջ 14):

4) «Թագաւոր և իշխան միահեծան, զմեծ արքայն Տրդատէս, զհամամիտ և համակարի եղբայրն իմ և զբազկակից բարեկամն, ... հրամանահան հզօր առ հասարակ ծովու և ցամաքի» (էջ 15-16):

5) «Կայսերակեսին Տրդատայ» (էջ 16):

6) «Երկրորդի թագաւորութեան իմոյ Տրդատայ արեւելեան ահեղանշան թագաւորի: Զի որպէս մեք յԱրեւմուտս տիրեմք բոլոր աշխարհիս, նոյնպէս և Տրդատ յԱրեւելս կացուցաք իշխել աիրաբար բոլոր աշխարհիս» (էջ 16):

7) «Մեք (Կոստանդինը – Հ. Բ.) սպսկեցաք զմեծ արքայն Տրդատ կայսերական թագիւ, ... աւժտեցաք զսա կայսերական և զինուորական զարդուք և զինուք մերովք» (էջ 16-17):

8) «Աստուածարեալ Սուրբ արքայն Տրդատ» (էջ 29):

9) «Տրդատն կայսերակերպ» (էջ 26):

---

[43] G. O s t r o g o r s k y. Histoire de l'Etat Byzantin. Paris, 1956, p. 259.

Անցնենք Հայոց եկեղեցուն և նրա հոգևոր առաջնորդին՝ կաթողիկոս Գրիգոր Լուսավորչին նվիրված տողերին:

1) Սեղբեստրոս պապի բնութագրմամբ «Կենդանի վկայն Քրիստոսի և մեծ խոստովանողն, սրբազնակատար կաթողիկոսն Տէր Սուրբ Գրիգորիոս, Լուսաւորիչն ամենայն Արևելից և Հիւսիսոյ» (էջ 12), որ, ոչ ավելի ոչ պակաս, Կոստանդին Մեծ կայսրը «եկն աՀիւ մեծաւ առաջի Սուրբ Լուսաւորչին և ի ծունկս իջեալ Համբուրեաց զբարձս նորա ըստ օրինի օֆրանդի: Եւ ապա Համարձակեալ Համբուրեաց զաջն և զխաչն և ասլա զդէմսն իբրև ի նոյն ինքն Քրիստոս» (էջ 26):

2) Կոստանդին կայսրը, դիմելով Լուսավորչին, ասում է. « Ո՛վ երանելիդ ի Հարս սուրբ Հայրապետ ... աղաչեմք զքեզ սիւնդ աննասանելի ամենայն աշխարՀի՝ ուսո՛ մեզ զՀաւատոյս մեր դաւանութիւն և աղօթեա՛ վասն ամենայն աշխարՀի և առաւել վասն մերոյ թագաւորութեանս, զի խաղաղութեամբ և Հանդարտութեամբ վարեսցուք զտիեզերական իշխանութիւնս» (էջ 26) :

3) «Ամենայն թագաւորք և իշխանք և եկեղեցականք՝ Հայք և Հռոմայեցիք անկանէին առ ոտս Սրբոյն Գրիգորի և խնդրէին թողութիւն մեղաց իւրեանց» (էջ 26):

4) Սեղբեստրոս պապը Լուսավորչին է նվիրում Տեառնեղբայրից իրեն Հասած «վակասը», ապա իր «միթրը», «որ էր փակեղն Յիսուսի», և այլ շատ բազմարժեք բաներ (էջ 27):

5) «Եւ եկեալ ի պաղատն պանծալի բազմեցաք ... Հայրապետքս (Լուսավորիչն ու Սեղբեստրոսը – Հ. Բ.) ի միում դերաՀրաշ գաՀաւորակի» (էջ 13):

6) «Առաքեցի ես (Սեղբեստրոսը – Հ. Բ.) և ժողովեցի զամենայն խեղս, և զկաղս և զկոյրս, զմիակողմանիս և զանդամալոյծս և զայլս ամենայն, որ նեղեալ էին ի պէսպէս ցաւս և ի տանջանս, և զայսպիսիս ժողովեալ Հանի զնոսա ամենեսեան ընդդէմ Սրբոյն Գրիգորի, զորս միանգամ աղօթիւք բժշկեաց զամենեսեան» (էջ 19):

7) «Զի Հաւատամ (պապը – Հ. Բ.) ճշմարտութեամբ եթէ չորք սիւն են յաշխարՀիս ի մերում ժամանակիս՝ Սուրբն Սեղբեստրոս յԱրևմուտս և Սուրբն Գրիգորիոս յԱրևելս ...» (էջ 23):

8) «Եւ ես (պապը) յօժարեցայ ի պատուել զմեծ խոստովանողն Քրիստոսի ըղաՀակիցս՝ իմ զԳրիգորիոս» (էջ 24):

9) «Ձեռնադրեցաք զԿաթողիկոսն Հայոց զՍուրբն Գրիգոր պապ և պատրիարք և Հայրապետ Հրամանաւ Հան ի տիեզերական ժողովս, Համապատիւ մեր Հզօր աթոռոյս, և Երուսաղէմացւոց և Անտիոքացւոց և Աղէքսանդրացւոց ... և արարաք զսա Պատրիարք Հայոց Մեծաց. զի ինքն և ամենայն աթոռաժառանգք սորա ինքնադլուխ եղիցին՝ յիւրեանց եպիսկոպոսացն առնելով ձեռնադրութիւն առաջարկութեամբ իւրեանց թագաւորին: Եւ Հայոց Հայրապետն ձեռնադրէ կաթողիկոս Վրաց աշխարՀին ... Եւ ուր և Հայ ազգ սփռեալք յընդՀանուր աշխարՀ ի մէջ այլալեզու քրիստոնէից, իշխանութիւն ունի Հայոց պատրիարքն ձեռնադրել նոցա եպիսկոպոս. Եւ և աշխարՀն Աղուանից եղիցի ընդ Հնազանդութեամբ Հայոց Հայրապետին. և առաջարկութեամբ Աղվանից թագաւորին Հայրապետն Հայոց ձեռնադրեսցէ կաթողիկոս նոցա. և պատրիարքքն երեքին՝ Երուսաղէմի և Անտիո-

քայ և Աղեքսանդրիոյ յորժամ պատրիարք ձեռնադրին՝ կամաւ և ընտրութեամբ Հայոց Հայրապետին լիցի, և որ ոք նոր նստցի յաթոռ պատրիարքութեան, զդաւանութիւն հաւատոյն իւրոյ, զոր պարտ էր մեզ *(Հռոմի պապին — Հ. Բ.)* ծանուցանել՝ զայն Հայոց Հայրապետին ծանուսցէ. զի զնա կարգեցաք մեզ գլխափոխան և հրամանահան ի վերայ ամենայն ասիական միջնաշխարհի» *(էջ 25)*:

*10)* «Գրեցի հրովարտակս ընդհանրականս առ Աւետարանչացն աթոռակալ պատրիարքունս, որ յԱրևելս զի զՀայոց հայրապետն համապատիւ տեսցեն ինքեանց մանաւանդ թէ և նախադահ իսկ. վասն զի յերկոտասան Առաքելոցն չորքն անդ կատարեցան» *(էջ 27)*:

*11)* «Յետ մեր վեհագոյն հրամանացս Հայոց հայրապետին կայ իշխանութիւն, զոր ինչ և կամեսցի ըստ առաքելական կանոնացն կապել և արձակել ի յերկինս և յերկրի» *(էջ 28-29)*:

*12)* «Եւ հրաման հանէ Հայոց հայրապետն ի Հայս և ի Հռոմս, ի Վիրս և յԱղվանս, յԱսորիս և ի Պարսս ի ծովէ ի ծով և ի գետոց մինչև ի ծագս աշխարհի և ի դրունս Դրախտին» *(էջ 30)*:

*Չզինված աչքով անգամ ակնհայտ է, որ համեմատությունը ավելի քան «հօգուտ» հայոց է:*

*Վերևում անդրադարձանք Սեղբեստրոս պապի այն հայտարարությանը, թե* «ունիմ իշխանութիւն յԱրևմտից մինչև յԱրևելս *ի վերայ ամենայն ազգաց և ազանց քրիստոսադաւանից, կապօղ և արձակօղ ի յերկինս և յերկրի և հրամանահան հզօր յընդհանուր յեկեղեցիս Քրիստոսի»: Այստեղ կրկնենք, որ սրա մեջ հայերիս ներառելը սխալ է, քանզի հենց «Դաշանց Թղթում» Հռոմի Սեղբեստրոս պապը Գրիգոր Լուսավորչին նախ որակում է* «Լուսաւորիչ ամենայն Արևելից և Հիւսիսոյ», *իր ժամանակի եկեղեցու չորս սյուներից Արևմուտքինը համարում է իրենը, բայց Արևելքինը Գրիգոր Լուսավորչին՝ «Սուրբ Սեղբեստրոս յԱրևմուտս և Սուրբն Գրիգորիոս յԱրևելս», Լուսավորչին համարում է իր «դահակիցը», «համապատիւ մեր հզօր աթոռոյս, և Երուսաղէմացւոց և Անտիոքացւոց և Աղէքսանդրացւոց» (էջ 24-25), որոնց պատրիարքները պիտի ձեռնադրվեն «կամաւ և ընտրութեամբ Հայոց Հայրապետին» (էջ 25), հենց նրան պիտի իրենց հավատո դավանությունը ծանուցանեն, քանզի պապը հենց հայոց կաթողիկոսին է կարգում իր «գլխափոխան և հրամանահան ի վերայ ամենայն ասիական միջնաշխարհի» (էջ 25):* Կաթողիկոսն *«ինքնագլուխ» է, ձեռնադրվում է հայոց թագավորի առաջարկությամբ հայոց եպիսկոպոսների կողմից: Ուստի «Արևելքի» տակ, ինչպես ասվեց վերևում, պիտի հասկանալ Մերձավոր Արևելքի երեք լատին պատրիարքությունները՝ Երուսաղեմի, Անտիոքի և Ալեքսանդրիայի: Չպետք է մեզ խրտնեցնի ասվածը, թե պապը հայոց կաթողիկոսին իր «գլխափոխանն» է կարգում, դա ևս ունի իր բացատրությունը, ինչպես կտեսնենք ստորև:*

*Այսպիսով, պնդումն այն մասին, թե «Դաշանց Թուղթ»-ը կազմող «անձնավորությունը» ունիթոռական հայացքներ ունի, ընդգծում է Հռոմի պապի գերակայությունը նաև հայոց եկեղեցու վրա, որ անգամ համոզված է, որ փաստաթղթում խոսքը վերաբերում է երկու եկեղեցիների միությա-*

*նը, ընդ որում ի վնաս Հայոց եկեղեցու ինքնուրույնության, քննադատության չի դիմանում:*

*Մի հեռուն գնացող նպատակադրված կեղծիք է նաև հետևյալը. «իբրև թե Սեղբեստրոս պապը գրեց «հրովարտակս ընդհանրականս առ Աւետարանչայն աթոռակալ պատրիարքունս, որ յԱրևելս, զի Հայոց հայրապետին համապատիւ տեսցեն ինքեանց, մանաւանդ թէ և նախագահ իսկ. վասն զի յերկոտասան Առաքելոցն չորքն անդ կատարեցան» (էջ 28):*

*Կրկնենք. «Արևելք» ասելով, պապը նկատի ունի Արևելքի երեք պատրիարքությունները՝ Անտիոքի, Երուսաղեմի և Ալեքսանդրիայի: Բայց ինչու՞ է ընդգծում առաքյալների չորս թիվը: Եթե չորսն են, բայց առկա են երեք պատրիարքություններ, ապա չորրորդը ո՞րն է: Պարզ չէ՞, որ Գրիգոր Լուսավորչինը, այսինքն՝ Կիլիկիայի թագավորությունում հաստատված Ամենայն Հայոց կաթողիկոսությունը: Լռելյայն չի՞ ենթադրվում, որ «Դաշանց Թղթի» կեղծիքի մասում Գրիգոր Լուսավորիչը հանդես է գալիս որպես չորրորդ «Աւետարանիչ», որին, ըստ Սեղբեստրոսի, պետի ոչ միայն «համապատիւ» համարեն իրեն ենթակա Հռոմի, Երուսաղեմացվոց, Անտիոքացվոց և Աղեքսանդրացվոց աթոռները, իսկ վերջին երեքը «մանաւանդ թէ և նախագահ իսկ», այսինքն՝ primus inter pares:*

## Բ) Մե՞կ աղբյուր, թե՞ երկու

*Ուսումնասիրողները «Դաշանց Թուղթը» մեզ հասած տեսքով համարում են մի ամբողջություն, ստեղծված XI-XIII դդ., որը և բնութագրվում է որպես «կեղծիք»: Մեր դիտարկումները, սակայն, հանգեցրել են այլ եզրակացության, որ մեր ձեռքում երկու աղբյուր կա, մեկը ստույգ, մյուսը դրա վրա կառուցված, որոշակի նպատակներ հետապնդող կեղծիք:*

*Իրական է Տրդատ-Մեծն Կոստանդին գաշինքը: Դրա գոյության մասին, ինչպես առանձին ուսումնասիրողներ ցույց են տվել, վկայում է V դ. հայ մատենագիրներից Զենոբ Գլակը: Նրա ասելով, Տրդատ արքան, իմանալով թե Կոստանդին կայսրը «հաւատաց ի Քրիստոս», գնաց կայսեր մոտ՝ Հռոմ «վասն դնելոյ դաշինս խաղաղութեան ի միջի»[44]: Այդ մասին գրում է և Մովսես Խորենացին. «Ընդ հանդչելն Շապհոյ արքայի Պարսից ի պատերազմացն, և ի դնալն Տրդատայ ի Հռոմ առ սուրբն Կոստանդիանոս»[45]: Ինչպես ժամանակին ցույց է տվել Կ. Շահնազարյանցը, դեպքերին մոտիկ կանգնած պատմիչները չգիտեն, որ Տրդատի հետ Հռոմ գնաց և Գրիգոր Լուսավորիչը, որ նրան, բացի Կոստանդնից, ընդունեց և Սեղբեստրոս պապը: Բերելով Խորենացու նշած մի այլ փաստ՝ Վրթանես կաթողիկոսի (333-341) նամակը Մեծն Կոստանդնի որդի Կոստանդ կայսեր, որտեղ հիշվում է Կոստանդին Տրդատ «սլայման ուխտին», հեղինակն անորոշ ենթադրում*

[44] *Պատմութիւն Տարօնոյ զոր թարգմանեաց Զենոբ Ասորի. Վենետիկ, 1899, էջ 40:*

[45] *Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց (այսուհետև՝ Խ ո ր ե ն ա ց ի). Տփղիս, 1913, էջ 227: Դեռ հարց է, Մովսես Խորենացին այստեղ «Հռոմ» ասելով քաղա՞քը նկատի ունի, թե՞ Հռոմեական կայսրությունը: Բացառված չէ, թե կայսրությունը: Նա մի փոքր առաջ գրել էր. «Փեսայանալով նմա Կոստանդիանոսի կեսարի որդւոյ Կոստայ թագաւորին Հռոմայ» (էջ 226): Կոստանդին Քլորոսը Հռոմ քաղաքի «թագավորը» չէր, այլ Հռոմեական կայսրության, բացի այդ նրա նստավայրը Հռոմում չէր, այլ Տրիրում:.*

է, որ գոյություն է ունեցել «քաղաքական դաշնադրություն մը Կոստանդիանոսի և Տրդատա մեջ»: Նա փորձում է որոշել այդ «քաղաքական դաշնադրության» պայմանները, որ պիտի լինեին, 1) «Հայոց Տերությունը տարեկան Հարկ մը տար Հռոմայեցվոց», 2) «անոնք ալ իրենց զորքովը պաշտպանեին Հայաստանը Պարսից դեմ» (էջ 67): Նա նկատի ունի Խորենացու «Պատմության» մեջ բերված Վրթանեսի նամակի պատճենը, և ոչ «Դաշանց Թղթում» հիշատակվածը: Նամակում ասվում է. «Եպիսկոպոսապետ Վրթանէս և որք ընդ նովաւ եպիսկոպոսունք և ամենայն նախարարք Հայոց Մեծաց. տեառն մերոյ Կոստանդեայ կայսեր ինքնակալի խնդալ: Յուշ լինի քեզ պայման ուխտի Հօրն քո Կոստանդիանոսի, որ առ. մերում թագաւորին Տրդատայ. և մի՛ տացես զաշխարհս քո Պարսից անաստուածից, այլ օգնեսցես մեզ զօրօք՝ թագաւորացուցանել զորդի Տրդատայ զԽոսրով... Այսմ լուր եղեալ Կոստանդեայ՝ առաքեաց զԱնտիոքոս յարդարիչ իւրոյ պալատանն զօրու ծանու, և ծիրանիս հանդերձ պսակաւ և թուղթ որ ունէր օրինակ զայս. Աւգոստոս ինքնակալ կայսր Կոստանդոս, մեծիդ Վրթանիսի և ամենայն աշխարհականաց քոց խնդալ: Առաքեցի ձեզ զօր յօգնականութիւն, և հրաման թագաւորացուցանել ձեզ զԽոսրով որդի արքայի ձերոյ Տրդատայ. որպէս զի ի բարեկարգութիւն հաստատեալ, մեզ ծառայեսջիք միամտութեամբ: Ողջ լերուք»[46]:

Տասներորդ և հետագա դարերի հայ հեղինակների գործերում հանդիպող Տրդատ արքայի հետ Լուսավորչի Հռոմ գնալու և Սեղբեստրոսին հանդիպելու վկայությունները Կ. Շահնազարյանցը համարում է անարժեք:

Այսպիսով, մեր ձեռքի տակ կա երկու աղբյուր. Տրդատ-Կոստանդին պայմանագիրը և մեր համոզմամբ՝ XIII դ. կեղծիքը:

### Գ) Որտե՞ղ և ե՞րբ է կնքվել դաշինքը

Թվում է՝ այստեղ հարց չպիտի գոյություն ունենա. իհարկե Հռոմում: Տրդատ թագավորը և Գրիգոր Լուսավորիչը իրենց ստվարաթիվ թափորով «ժամանեցին ի տեսութիւն տեղւոյս տէրունական տանս արևմտեան և արևելաժառանգ սրբոց և գլխաւորաց Առաքելոցս, և փոխանորդի Աստուծոյ պատուեալ պապին» (էջ 12) Սեղբեստրոսի[47]:

Մի կարևոր (և հիմնական) փաստի վրա (որ, ինչպես կտեսնենք ստորև, առանձին ուսումնասիրողներ նկատի ունեցել են) պիտի անպայման կանգ առնել: Նշենք, որ այն մասնագետները, ովքեր ընդունում էին Տրդատ արքայի և Գրիգոր Լուսավորչի Հռոմ ճանապարհորդած լինելը, ուշադրություն չէին դարձնում այն հանգամանքի վրա, որ Դիոկղետիանոսը, ելնելով այն փաստից, որ կայսրության հսկայածավալ տարածքը մեկ կենտրոնից (Հռոմից) կառավարելը դարձել էր անհնարին, ստեղծեց այսպես կոչված տետրարքիան՝ քառապետությունը, չորս կայսրերի կառավարումը: Գահակալության սկզբում Դիոկղետիանոսը կառավարչակից ընտրեց Մաքսի-

---

[46] Նույն տեղում, էջ 261:

[47] 1709 թ. հրատարակության մեջ՝ «և փոխանորդի նորա (Առաքելոց – Հ. Բ.) պատուելի պապին» (էջ 411):

միանոսին: Դիոկղետիանոսն ու Մաքսիմիանոսը կրում էին Օգոստոս տիտղոսը (286 թ.): 293 թ. երկու կայսրերը իրենց համար նշանակեցին կառավարչակիցներ, որոնք կոչվեցին կեսարներ: Կայսրության արևելյան մասի համար, որը կառավարում էր ինքը՝ Դիոկղետիանոսը, կառավարչակից ընտրեց Գայիոս Գալերիոս Վալերիոս Մաքսիմիանոսին, իսկ Արևմուտքի Օգոստոս Մաքսիմիանոսը կեսար նշանակեց Գայիոս Փլավիոս Վալերիոս Կոստանդին Քլորոսին (Կոստանդին Մեծի հորը): Յուրաքանչյուր կառավարիչ օժտված էր կայսերական ողջ իշխանությամբ, թեև կեսարները ավելի ցածր էին համարվում, քան օգոստոսները: Ահա իշխանության Դիոկղետիանոսի և Մաքսիմիանոսի միջև բաժանումից հետո փաստորեն սկիզբ առավ Հռոմեական կայսրության Արևելքի և Արևմուտքի բաժանումը[48]:

Կայսրերից և ոչ մեկը Հռոմը չդարձրեց իր աթոռանիստը: Դիոկղետիանոսը իր նստավայր էր դարձրել Բյութանիայի Նիկոմեդիան, Գայիոս Գալերիոսը՝ Սիրմիոնը՝ Ստորին Պանոնիայում, Սավա գետի ձախ ափին, Մաքսիմիանոսը՝ Մեդիոլանը (Միլան), ապա Ռավեննան, իսկ Կոստանդին Քլորոսը՝ Տրիրը: «Հավիտենական Հռոմը» (Roma aeterna), թեև նախկինի պես համարվում էր կայսրության մայրաքաղաքը, կայսեր նստավայր չէր և կորցրել էր իր վաղեմի քաղաքական նշանակությունը[49]: 305 թ. մայիսի 1-ին Դիոկղետիանոսը Նիկոմեդիայում, իսկ Մաքսիմիանոսը Միլանում հրաժարվեցին իշխանությունից: Օգոստոս հռչակվեցին Գալերիոսն ու Կոստանդին Քլորոսը: Դիոկղետիանոսի տեղը գրավեց Գալերիոսը: Նա Կոստանդնին (Մեծին) ճանաչեց կեսար[50], որը շատ չանցած հռչակվեց կայսր՝ Օգոստոս: Հետևաբար Հռոմում չէր նստում և Կոստանդին Քլորոսի որդի Կոստանդին Մեծը, «որդեգրեալն Դիոկղետիանոսի», ինչպես գրում է Մովսես Խորենացին[51]: Նա մուտք գործեց «Հավիտենական քաղաքը» Մաքսենտիոսի դեմ Մուլվիոս գետի ափին տարած հաղթանակից հետո 312 թ. հոկտեմբերի 29-ին և այնտեղ մնաց մեկից երեք ամիս: 313 թ. Կոստանդինը հեռացավ Հռոմից և գնաց Մեդիոլանոն (Միլան), ուր հանդիպեց Լիկինիոսին և ամուսնացրեց նրան իր քույր Կոնստանտիայի հետ[52]: Դրանից հետո Կոստանդինը Հռոմում եղավ երկու անգամ ևս. 315 թ. հուլիսի 18-ից մինչև սեպտեմբերի 27-ը՝ Decennalia-ների (իր իշխանության տասնամյակի պատվին կազմակերպված հանդիսությունների առթիվ) և 326 թ. հուլիսի 18-ից մինչև 25-ը՝ Vicennalia-ների (քսանամյակի): 315 թ. Կոստանդնի

---

[48] Н. А. М а ш к и н. История Древнего Рима. М., 1950, с. 591-592.

[49] Նույն տեղում:

[50] Նույն տեղում, էջ 601:

[51] Խ ո ր ե ն ա ց ի, էջ 226:

[52] Կոնստանտիան հիշվում է և «Դաշանց թղթում», որի վկայության համաձայն, Կոստանդին Մեծը փառավոր ընդունելություն կազմակերպեց Տրդատ արքայի (և Գրիգոր Լուսավորչի) պատվին, իսկ նրա կին Մաքսենտեսը (Մաքսիմինան) «և քոյր իմ սքանչելագեղ Կոստասիայ պատրաստեցին ընծայս զարմանազանս, որովք պսակեցի բամբիշն արևելային վայելչափայլ թագուհին, մեծ Աշխէն, և զչքնաղագեղ օրիորդն Հայոց Մեծաց, Խոսրովիդուխտ» (էջ 17):

*Հռոմում գտնվելու ժամանակ Տրդատ III-ի այցելության մասին արևմտյան աղբյուրներում որևէ հիշատակություն չկա[53]:*

*Տրդատ III-ի և Կոստանդին Մեծ կայսեր միջև կնքված պայմանագրի գոյությունը որպես կանոն ընդունված է հետազոտողների կողմից: Տարակարծությունները վերաբերում են դրա կնքման վայրին և ժամանակին: Ավելի վաղ հետազոտողներից Բ. Սարգիսյանը որպես դաշինքի կնքման վայր ենթադրում էր կամ Կոստանդնուպոլիսը, կամ Նիկոմեդիան[54]: Նա գրում էր. «Ստուգիւ Կոստանդիանոսի վերոյիշեալ Քսանամեակն՝ կամ Նորոյն Հռովմայ, եւ կամ լաւ եւս Նիկոմիդիոյ մէջ կատարեցաւ, զկնի ժողովոյն Նիկիոյ, ներկայութեամբ իսկ սուրբ Հարց ժողովոյն, զորս մեծապարգև ընծաներով մեծարեց»:*

*Ա. Տեր-Միքելյանը գտնում է, որ դաշինքը կնքվեց Նիկոմեդիայում 324 թ. վերջին, ելնելով այն փաստից, որ կայսրը Լիկինիոսի դեմ տարած հաղթանակը (324 թ.) հանդիսավոր կերպով նշեց հենց Նիկոմեդիայում[55]:*

*Հ. Գելցերը կարծում է, որ դաշինքը կնքվել է Սարդիկայում (Սոֆիա) 314 թ.[56], իսկ Ֆ. Թուռնըբիզը Կոստանդնուպոլսում կամ հռոմեական Արևելքի մի այլ վայրում[57]: «Արևելքում» 324 թ. կնքված է համարում Հ. Աստուրյանը: Նա գրում է. « Որչափ անստույգ է ճանապարհորդությունը դեպի Հռոմ, նույնքան վավեր է դաշինքը Տրդատա և Կոստանդիանոսի մեջ... Հայոց համար այդ ժամանակ հռոմեական պետության կեդրոնն էր Անտիոք և Նիկոմիդիա. ինձի շատ ավելի բնական և հավանական կը տեսնվի, որ այս դաշինքը 324-ին և այն՝ Արևելք կնքված ըլլա, երբ Կոստանդին Լիկինիոսի վրա տարած հաղթությամբ բովանդակ Արևելքի և Արևմուտքի միակ տերը դարձավ... Այս դաշինքով մեկ կողմը ինքզինքը կը պարտավորեր Հայաստանը ընդդեմ Պարսից պաշտպանել, իսկ մյուսը կխոստանար իր ավատական վերաբերությանց մեջ հավատարիմ մնալ Հռոմա»[58]:*

*Վ. Էնսլինը վճռականորեն անհիմն է համարում այն ենթադրությունը, թե Տրդատն ու Գրիգոր Լուսավորիչը ճանապարհորդել են Հռոմ, բայց և ընդունում, որ 314 թ. հնարավոր է, որ պայմանագիր կնքվել է[59]:*

---

[53] M a r i e - L o u i s e  C h a u m o n t. Une visite du roi d' Arménie Tiridate III à l' Empereur Constantin à Rome ? L' Armenie et Byzance. Histoire et Culture. 12, Paris 1996, p. 60-61.

[54] *Ագաթանգեղոս և իւր բազմադարեան դաղտնիքն (քննադատութիւն Հ. Բարսեղ վ. Սարգիսեանի ի Մխիթարեան ուխտէն). Վեննաիկ, 1890, էջ 259:*

[55] A. T e r  M i k e l i a n. Die armenische Kirche in ihren Beziehungen mit den byzantinischen (vom IV. bis zur XIII Jahrhundert). Leipzig, 1892, S. 19-20 (apud: C h a u m o n t. *Նշվ. աշխ., էջ 61):*

[56] H. G e l z e r. Die Anfange der armenischen Kirche. Berichte über Verhandlungen der koniglichen sachsischen Gesellschaft der Wissenschaften zu Leipzig, Philologische - historische Klasse, 1895, S. *171. Մ.-Լ. Շոմոնը ցույց է տալիս, որ փաստ չկա վկայող, թե Կոստանդինը 316 թ. առաջ հաստատված է եղել Սարդիկայում* (M.-L. C h a u m o n t. *Նշվ. աշխ., էջ 64):*

[57] F. T o u r n e b i z e. Histoire politique et religieuse de l'Arménie. Paris, 1910, p. 55.

[58] *Յ. Ա ս տ ո ւ ր ե ա ն. Քաղաքական յարաբերութիւններ ընդմէջ Հայաստանի և Հռովմայ 190 էն ն.Ք. մինչև 428 յ.Ք., Վեննաիկ, 1912, էջ 267:*

[59] Paulys Realencyclopadie der Classischen Altertumwissenschaft, VI A/2, 1937, col. 2249 (apud: C h a u m o n t, *Նշվ. աշխ., էջ 60):*

*Հարցը մանրամասնորեն և հանգամանալից ուսումնասիրվել է Մարի-Լուիզ Շոմոնի կողմից: Խնդրին նվիրված նրա հոդվածը վերնագրված է. «Հայոց արքա Տրդատ III-ի այցելությունը Կոստանդին կայսեր՝ Հռո՞մ»: Հարցական նշանը վկայում է, որ հոդվածագիրը կասկածում է, թե Տրդատի այցելությունը տեղի է ունեցել Հռոմ քաղաքում: Նախ և առաջ նա քննում է այն հարցը, թե հիշյալ ժամանակաշրջանում Կոստանդին Մեծի նստավայրը որտե՞ղ էր գտնվում: Որպես պայմանագրի կնքման վայր նշելով Նիկոմեդիան, և ցույց տալով, որ Մեծ Հայքից Բյութանիա նահանգի Նիկոմեդիա քաղաքը ճանապարհորդելը և վերադառնալը Հայաստան շատ ավելի հեշտ էր (քան Հռոմ գնալը), նա իսկույն ևեթ հրաժարվում է այդ մտքից: Ելնելով այն փաստից, որ Կոստանդինը 324 թ. սեպտեմբերի 18-ին հաղթանակ տանելով Լիկինիոսի դեմ Քրիսուպոլսում, այդ առթիվ կազմակերպած հանդիսությունները իրականացրեց Նիկոմեդիայում, նա այնտեղ էր գտնվում 324 թ. վերջին և 325 թ.՝ Նիկիայի Ա Տիեզերական ժողովից առաջ և հետո, ապա, ըստ հոդվածագրի, այդ թվականները Տրդատ III-ի ճանապարհորդության համար Հռոմեական կայսրություն շատ ուշ են: Նա առաջ է քաշում մի նոր վարկած, ցույց տալիս, որ Կոստանդինը 316-ից մինչև 322 թ. «ավելի հաճախ էր մնում Մերձդանուբյան նահանգներում, հատկապես Պաննիայի Սիրմիոնում և Սարդիկայում (այժմ՝ Սոֆիա)՝ Իլլիրիա նահանգում: Սարդիկան նշելով, նա մեջբերում է անանուն մի հեղինակի. «Կոստանդինը նախապես մտածեց պետության (կենտրոնը) փոխադրել Սարդիկա: Այդ քաղաքի վրա սիրահարված, նա անընդհատ կրկնում էր. «Իմ Հռոմը Սարդիկան է»[60]: Այսինքն նա չի բացառում, որ Տրդատ-Կոստանդին դաշինքը կնքված լինի հենց Սարդիկայում: Բայց, ինչպես կտեսնենք ստորև, գոյություն ունի և Եվսեբիոս Կեսարացու այն փաստը, համաձայն որի Նիկոմեդիան «իր» (Կոստանդնի) քաղաքն էր: Անանունի նախադասության միտքը մենք հասկանում ենք այսպես. թե կայսրը նախքան Կոստանդնուպոլիսը (իմա՛ Բյուզանդիոնը) մայրաքաղաք դարձնելը, մտածում էր Սարդիկան դարձնել այդպիսին: Բայց դա նշանակու՞մ է, թե Տրդատ-Կոստանդին պայմանագիրը հնարավոր է, որ կնքված լիներ Սարդիկայում (կամ Մերձդանուբյան շրջանի նահանգներու՞մ):*

*Մ.-Լ. Շոմոնի եզրակացությունը. «Եթե հարցը քննենք օբյեկտիվորեն, ապա պարզ չէ, թե ե՞րբ և ինչպե՞ս Տրդատը կարող էր ընդունվել Կոստանդնի կողմից Սարդիկայում կամ Մերձդանուբյան նահանգների որևէ կայսերական նստավայրում»: Համարելով դա միանգամայն անհնարին, Շոմոնը, այդուհանդերձ, չի բացառում կայսեր և Հայոց արքայի միջև կնքված պայմանագրի փաստը: Նրա համար անհասկանալի է 314 թ., որ առաջ է քաշվում ուսումնասիրողներից ոմանց կողմից, բայց և խուսափում է իջնել մինչև 324 կամ 325 թ.՝ Նիկիայի տիեզերական ժողովի տարին, որին նախագահում էր անձամբ կայսրը, երբ, թերևս, Հայոց արքայի ներկա-*

---

[60] Fragmenta Historicorum Graecorum (ed. C. Muller). Paris, 1928, IV, p. 199 - "Ὅτι Κωνσταντῖνος ἐβουλεύσατο πρῶτον ἐν Σαρδικῇ μεταγαγεῖν τὰ δημόσια. φιλῶν τε τὴν πόλιν ἐκείνην συνεχῶς ἔλεγεν „ἡ ἐμὴ Ῥώμη Σαρδική ἐστιν„. M.-L. C h a u m o n t. *Նշվ. աշխ., էջ 63:*

յացուցիչների կողմից հնարավոր էին դիվանագիտական կոնտակտները[61]։ Մ.-Լ. Շոմոնը իր հոդվածն ավարտում է մի շարք ենթադրություններով։ Այսպես. Տրդատ III-ի և Կոստանդինի կայսեր մի ներկայացուցչության միջև Հռոմում կամ կայսերական որևէ այլ նստավայրում կնքվել է պայմանագիր, որի նպատակը ոչ այլ ինչ էր, քան հաստատումը հին foedus-ի. Հռանդեայի պայմանագրի (63 թ.) պայմանների, որոնց համաձայն Մեծ Հայքն իրենից ներկայացնում էր «խնամառու» պետություն, կամ Հռոմի մի պրոտեկտորատը։ Հոդվածագիրը չի բացառում և Տրդատ III-ի Հռոմ կատարած այցելության պատմությունը համարել Տրդատ I-ի այցելության մի վերհուշը։ Նա հարց է տալիս նաև, թե արդյոք հիշյալ ավանդության տակ թաքնված չէ՞ Տրդատ III-ի Հռոմ այցելությունը կատարված իր գահակալությունից առաջ։ Նա հիշում է պարսից արքա Շապուհ I-ի արշավանքը Հայաստան, Տրդատի հոր՝ Խոսրովի պարտությունը և վերջինիս կողմից դեռևս մանկահասակ Տրդատին փախցնելը Հռոմեական կայսրություն։ Բոլոր դեպքերում, գրում է Շոմոնը, մի քիչ կասկածելի է, որ հայոց դահի ժառանգորդը իր երկարատև աքսորի մեծ մասը անցկացրած լինի Հռոմում[62]։

Մ.-Լ. Շոմոնը «Դաշանց թղթին» չի անդրադարձել ամենևին։ Այդուհանդերձ հիշյալ վիճահարույց հարցի առնչությամբ մենք չենք կարող Մովսես Խորենացու «Պատմության» մեջ առկա տեղեկությունների կողքով անցնել։ Նախ կրկնենք. հայտնի է, որ Կոստանդին Մեծը, հաղթելով Լիկինիոսին (324), հաղթանակի հանդիսությունները կատարեց Նիկոմեդիայում[63]։ Նա Նիկոմեդիայում նշեց և իր թագավորության քսանամյակը (325), հրավիրելով նաև այլ ազգերի (λοιποῖς ἔθνεσι) մեծամեծներին[64], հավանաբար և իր «վասալ» Տրդատ արքային։ Հարցի վերաբերյալ հիշատակություն ունի Մովսես Խորենացին։ Կոստանդին Մեծը, «հանդերձ որդւովքն մի թագաւորութիւն զՀռոմայեցւոցն ցուցեալ զքսանեմեալն ի Նիկոմիդացւոց քաղաքին կատարեաց»[65]։ Հենց նրա թագավորության քսանամյակին էլ, 325 թ., ըստ Եվսեբիոս Կեսարացու, գումարվեց և Նիկիայի Ա Տիեզերաժողովը[66]։

Եվսեբիոս Կեսարացին, ինչպես տեսանք վերևում, Նիկոմեդիան համարում է «իր (Կոստանդնի) քաղաք» (τὴν αὐτοῦ πόλιν) և Բյութանիա նահանգի մայրաքաղաք (τὴν Βιθυνῶν ἄρχουσαν) (որտեղ և նա վախճանվեց 337 թ. մայիսի 22-ին, իսկ աճյունը տեղափոխվեց Կոստանդնուպոլիս և ամփոփվեց Սրբոց Առաքելոց տաճարում)։ Շարադրելով Տրդատ արքայի Աչխենի հետ ամուսնության պատմությունը, նա ցույց է տալիս, որ «ընդ նոյն աւուրս լինին հարսանիք և Մաքսիմինայ դստերն Դիոկղետիանոսի ի Նիկոմիդայ, փեսայանալով նմա Կոստանդիանոսի կեսարի որդւոյ Կոստայ

---

[61] M.-L. C h a u m o n t. Նշվ. աշխ., էջ 65։

[62] Նույն տեղում, էջ 66։

[63] E. S t e i n. Histoire du Bas-Empire. T. I, De l'Etat Romain a l'Etat Byzantin (284-476), Paris, 1959, p. 105.

[64] Eusebii Pamphili Caesareae Palestinae episcopi De Vita Imp. Constantini, Lib. III, cap. XV. M i g n e. Patrologia Graeca. T. 20, col. 1072.

[65] Խ ո ր ե ն ա ց ի, էջ 237-238։

[66] Eusebii De Vita Constantini, Lib. IV, cap. XLVII, col. 1197.

*(իմա՝ Բյուրոսի – Հ. Բ.) թագաւորին Հռոմայ... Այս Կոստանդիանոս բարեկամացեալ ի հարսանիսն ընդ Տրդատայ մեր թագաւորի»*[67]:

*Վերոհիշյալ դեպքի մասին ակնարկ կա և «Դաշանց Թղթում»: Խոսելով Կոստանդին Մեծի՝ Տրդատի (և Գրիգոր Լուսավորչի) պատվին կազմակերպված ընդունելության մասին, աղբյուրում նշվում է. «պալատանն իմոյ պատուասիրեցի զսիրեցեալն իմ. ընդ որս և մեծափառ դշխոյս մեր Մաքսինտէս (կարդա՝ Մաքսիմինայ – Հ. Բ.) և քոյր իմ աքանչելագեղ Կոստասիայ պատրաստեցին ընծայս զարմանազանս, որովք պսակեցի բամբիշն արեւելեան վայելչափայլ թագուհին, մեծ Աշխէն, և պչրանազագեղ օրիորդն Հայոց Մեծաց, Խոսրովիդուխտ» (էջ 17): Պարզ չէ՞, որ այդ պալատը Հռոմում չէր գտնվում, այլ Նիկոմեդիայում*[68]*: Իսկ որ Կոստանդինն ու Տրդատը ծանոթներ ու բարեկամներ էին նախքան այդ դեպքերը, վկայում է նույն աղբյուրը: Կոստանդինն ասում է. «Զոր լուեալ սիրելին իմ ի մանկութենէ Տրդատ» (էջ 20): Այդ փաստը չի՞ արձանագրված Ագաթանգեղոսի («Անդ ամն ապրեցուցանէ ի հինէ անալ յորդւոյն Խոսրովու թագաւորին Հայոց՝ մանկիկ մի փոքրիկ, անուն Տրդատ. առեալ փայփայեալն փախուցեալ ի դուռն կայսեր ի կողմն Յունաց»)*[69]*, և Մովսես Խորենացու («Յորմէ զաղթեալ նախարարքն Հայոց, հանդերձ այդաւն Արշակունեաց ի Յոյնս ապաւինէին. յորոց մի էր եւ Արտաւազդ Մանդակունի, որոյ առեալ զՏրդատ որդի Խոսրովու՝ ի դուռն կայսեր հասուցանէր»)*[70]* աշխատություններում:*

*Եզրակացությունը մեկն է: Տրդատ III-ը գնաց Հռոմեական կայսրություն, բայց ոչ Հռոմ, այլ Նիկոմեդիա, որը Դիոկղետիանոսը դարձրել էր կայսրության գահանիստը և վերջինիս կառավարման կենտրոնը*[71]*: Հենց այստեղ, Կոստանդին Մեծի թագավորության քսանամյակի (325) առթիվ կազմակերպված հանդիսություններին բացառված չէ, որ հրավիրված էր և Տրդատը: Ուստի պատմագրության մեջ արտահայտված այն կարծիքը, թե իբր շփոթված է Տրդատ I-ի այցելությունը Հռոմ Ներոն կայսեր օրոք, չի հաստատվում:*

*Վերջացնելով մեր խոսքը Տրդատ-Կոստանդին պայմանագրի կնքման վայրի և ժամանակի մասին, գտնում ենք, որ այն կնքվեց հենց Նիկոմեդիա քաղաքում, իսկ թե կոնկրետ ե՞րբ, դժվար է ասել: Կամ Կոստանդնի ամուսնության հանդեսի (որին հրավիրված էր Տրդատը), կամ էլ Լիկինիոսի դեմ կայսեր տարած հաղթանակի առթիվ Նիկոմեդիա քաղաքում կազմակերպված հանդիսությունների ժամանակ, որոնց մասնակցելու համար պիտի հրավիրված լիներ Հայոց արքան:*

---

[67] *Խ ո ր ե ն ա ց ի, էջ 226:*

[68] *Եվսեբիոս Կեսարացին ցույց է տալիս, որ կայսրը Նիկոմեդիայում եկեղեցի (տուն աղոթից - εὐκτήριον οἶκον) կառուցեց.* Eusebii De Vita Constantini, Lib. III, cap. L, col. 1109: *Բայց հեղինակի նույն կայսեր ներբողյանում այն կոչված է ἀνάκτορον - պալատ (նույն տեղում, ծանոթ. 37): Հայտնի է, որ Կոստանդին Մեծը հեթանոս մեռավ (մահվան նախօրյակին նա աստվածներին զոհ մատուցեց), բայց եկեղեցին նրան հայտարարեց քրիստոնյա և սուրբ: Այժմ հասկանալի է, թե ինչու պալատը դարձավ եկեղեցի:*

[69] *Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց (այսուհետև՝ Ագաթանգեղոս). Տփղիս, 1909, էջ 24:*

[70] *Խ ո ր ե ն ա ց ի, էջ 215:*

[71] E. S t e i n. *Նշվ. աշխ. հ. 1, էջ 2:*

*Հռոմի Սեղբեստրոս պապը պատճառ դարձավ, որպեսզի «Դաշանց Թղթի» ստեղծողը Կոստանդին Մեծին Հռոմում տեսնի, հայոց համար կեղծիքի գլխավոր գերակատարը Սեղբեստրոսը պիտի լիներ, հետևաբար Գրիգոր Լուսավորիչը պիտի Հռոմ գնար:*

## Դ) Կնքված դաշնադրության պայմանները

*Նախապես նշենք, որ մեր ձեռքում է ոչ թե պայմանագրի տեքստը, այլ մանրամասնություններով հագեցած դրա վերաշարադրանքը, ավելի ճիշտ՝ դաշինքի մասին պատմությունը:*

*Պայմանագրի պրեամբուլան հետևյալն է. «Երկոքին արքայքս [և երկոքին հայրապետք][72] և երկոքին ազգքս Հռովմայեցիք և Հայք միաբան և միախորհուրդ համաշունչ[73] եղբարք գրեցաք միմեանց, և ուխտ և դաշինս հաստատեցաք յաւիտենական ի միջի մերում» (էջ 14): Պայմանագրի գործելու ժամկետը «յաւիտենական» է, այսինքն ժամանակով անսահմանափակ[74]: Առանձին կետով սահմանված է պայմանավորվող պետությունների տարածքային ամբողջականությունը: Ամենայն մանրամասնությամբ ու ճշգրտությամբ ( XI-XIII դդ. «կեղծիքի», «ոգիտության տեր» մարդու համար անըմբռնելի) ներկայացված է Արևելահռոմեական կայսրության նահանգային բաժանումը, Արևմտահռոմեականի բացարձակ բացակայության պայմաններում, այն էլ այն դեպքում, երբ կարծես թե մշտական թատերաբեմը Հռոմն է՝ Արևմտահռոմեական կայսրության կենտրոնը: Ըստ «Դաշանց Թղթի» Արևելահռոմեական կայսրության տարածքը սկիզբ է առնում Ադրիատիկ ծովից «յայնկոյս Ադրիական ծովուն և ի միջոցն Պոնտական և Կասպիական պեղագոսաց» (էջ 15)[75]: Նախապես նշենք, որ լատիներեն կազմված պայմանագրի Տրդատին հանձնված պատճենը թարգմանված պիտի լիներ հայոց արքունիքում ընդունված հունարեն լեզվով: Այդ մասին դեռ խոսք կլինի: Ըստ նահանգների («աշխարհների») այն ներկայացված է այսպես:*

---

[72] *Անկյունավոր փակագծերի մեջ առնված բառերը բացահայտ ընդմիջարկություն ենք համարում, կատարված շատ ավելի ուշ:*

[73] *Հմմտ. Կոստանդնուպոլսի պատրիարք Նիկոլայոս Միստիկոսի (901-907, 912-925) նամակը Հովհաննես Դրասխանակերտցի կաթողիկոսին. « Զի այդպէս միախոհք և միաբան լինելով...» (էջ 268) և Գերմանոս Բ պատրիարքի նամակը Կոստանդին Բարձրբերդցի կաթողիկոսին. «Վերադառնալ նախկին միության և համախոհության» (տե՛ս Հ. Բ ա ր թ ի կ ե ա ն. Հայ-բյուզանդական եկեղեցական յարաբերութիւնները փաստաթղթերում: Կոստանդնուպոլսի պատրիարքներ Գերմանոս Բ-ի (1222-1244) և Մանուէլ Բ-ի (1244-1255) թղթերը Հեթում Ա թագաւորին և Կոստանդին Ա Բարձրաբերդցի կաթողիկոսին.– «Գանձասար». հ. Է, Երևան, 2002, էջ 68:*

[74] *Այդպիսի «հավիտենական» հաշտության պայմանագրեր շատ են կնքվել (տե՛ս Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին 5: Բյուզանդական աղբյուրներ. դ. Ա, Պրոկոպիոս Կեսարացի (թարգմ. բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հ. Բարթիկյանի). Երևան, 1967, Պարսկական պատերազմի մասին. գիրք Ա, գլ. 22 և Կոստանդին Մեծի և պարսից արքա Շապուհի միջև (Խ ո ր ե ն ա ց ի, էջ 236):*

[75] *Ճիշտը՝ պեղագոսաց, ինչպես է 1709 թ. հրատարակության մեջ:*

| | «Աշխարհներ» | Ἐπαρχίαι | (Provinciae) |
|---|---|---|---|
| 1 | Աֆրիկեցւոց | Ἀφρικη | (Africa) |
| 2 | Արաբացւոց | Ἀραβία | (Arabia) |
| 3 | Միջագետաց | Μεσοποταμία | (Mesopotamia) |
| 4 | Մեծ Ասորոց | Συρια Μεγαλη | (Syria Magna) |
| 5 | Փիւնիկաց | Φοινικη | (Phoenice) |
| 6 | Կիլիկեցւոց | Κιλικία | (Cilicia) |
| 7 | Փռիւգացւոց | Φρυγια | (Phrygia) |
| 8 | Պամփիւլացւոց | Παμφυλια | (Pamphylia) |
| 9 | Կապպադովկացւոց | Καππαδοκία | (Cappadocia) |
| 10 | Բիւթանացւոց | Βιθυνια | (Bithynia) |
| 11 | Գաղատացւոց | Γαλατία | (Galatia) |
| 12 | Պիսիդացւոց | Πισιδία | (Pisidia) |
| 13 | Ասիացւոց | Ἀσία | (Asia) |
| 14 | Ոնոռնացւոց[76] | Ὠνοριάς | (Onorias) (էջ 15) |

Ինչպես տեսնում ենք այս ցուցակից, Արևելահռոմեական կայսրության տարածքում բացակայում է Փոքր Հայքը (Armenia Minor): Ինչպես միանգամայն ճիշտ նշում է Ն. Ադոնցը, «Փոքր Հայքի մասին կազմված ավանդական պատկերացումները դեռևս կարիք ունեն քննադատական ստուգման, որովհետև հիմք չկա հայոց պատմությունից դուրս հանելու վաղուց ի վեր բնիկ հայ բնակչություն ունեցող մի ամբողջ շրջան: Իրականում Հայոց պատմական կյանքում Փոքր Հայքին վիճակվել է մի շատ լուրջ առաքելություն, և այն արդարացի դնահատել կարելի է միայն այն դեպքում, եթե հրաժարվենք եկեղեցական այն գաղափարախոսությունից, որին հարել և մինչև այսօր էլ հարում է հայ պատմագիտությունը: Այդ միակողմանի վերաբերմունքն էլ խանգարել է Փոքր Հայքի ուսումնասիրությանը հայկական տեսակետից: Նրա մասին գոյություն ունեցող պատկերացումներն այնքան աղոտ են, որ շատերը չեն տարբերում Փոքր Հայքը Կապադովկիայից: Փոքր Հայքի հողերը հռոմեական նահանգների շարքն անցան որպես Կապադովկիայի բաղկացուցիչ մաս: Այդ վիճակում նա մնաց մինչև Դիոկղետիանոսը, մինչ Գ դարի վերջը, երբ Փոքր Հայքը առանձնացվեց որպես ինքնուրույն նահանգ»[77]:

«Դաշանց Թղթում», սակայն, Փոքր Հայքը, որ ամենայն հավանականությամբ մինչև Դիոկլետիանոսը Կապադովկիայի մաս էր կազմում, պիտի բաժանված լիներ Առաջին և Երկրորդ Հայքի (եթե կա Առաջին Հայք, ապա սպասելի է և Երկրորդ Հայքի առկայությունը), ուստի այն չպիտի էլ լիներ այս ցուցակում, քանի որ Կոստանդինը գիջել էր Տրդատին. «և սեպհական աշխարհ սահմանեցի (Կոստանդին Մեծը – Հ. Բ.) նմա (Տրդատ արքային –

[76] «Դաշանց Թղթի» 1709 թ. հրատարակության մեջ չի հիշված «Փիւնիկաց աշխարհը», ինչպես և «Մեծ Ասորոցը» և «Պիսիդացւոցը»: Բայց կա «Պոնդացւոց աշխարհը», որ բացակայում է Կ. Շահնազարյանցի հրատարակած տարբերակում: «Դաշանց Թղթի» առկա արտացոլությունների համեմատական քննությունը հնարավորություն կտա կազմելու Արևելահռոմեական կայսրության վարչական տարածքի ավելի ճշգրիտ պատկերը IV դ. սկզբում:

[77] Ն. Ադոնց. նշվ. աշխ., էջ 82:

*Հ. Բ.) զՊռոտին Արմենիան, զԿապադովկիա» (էջ 18): IV դ. գրված Սրբոց Եվստրատիոսյանց Վարքում Կապադովկիան չի համարվում «յունաց երկիր»: Ավելի որոշակի է պատմահայրը. «...մինչև ցայսօր ժամանակի անուանեն Յոյնք զկղիմայն զայն Պռոտին Արմենիան, որ թարգմանի Առաջին Հայք»[78]: Այս առթիվ մի հարց էլ: Ունենք «Պռոտին Արմենիան» «Դաշանց Թղթի» և «Պռոտին Արմենիան» Խորենացու: Ո՞րն է սկզբնականը. «Դաշանց Թուղթը», թե՞ պատմահոր «Պատմությունը»: Ովքեր «Դաշանց Թուղթը» իր ամբողջության մեջ մեկ աղբյուր և կեղծիք են համարում, պարզ է, պիտի պնդեին, թե «Պռոտին Արմենիան»-ը «Դաշանց Թուղթը» վերցրել է Խորենացուց: Բայց բազում փաստեր հաստատում են, որ «Դաշանց Թուղթը» ավելի վաղ է ստեղծվել, քան պատմահոր «Պատմությունը»-ը: Եթե մեր ենթադրությունը ճիշտ է, ապա Մովսես Խորենացու «Պատմության» մեզ հայտնի հունական աղբյուրների թվում ավելանում է ևս մեկը: Եվ դա դեռ բոլորը չէ: Եթե «Պռոտին Արմենիան» է, և ոչ «Առաջին Հայք»՝ (հայցական հոլով), ապա պիտի որ Խորենացու ժամանակ «Դաշանց Թուղթը» դեռ հունարենից չէր թարգմանվել հայերեն:*

*Մի կարևոր փաստ ևս: Կոստանդին Մեծը, շարունակելով իր ասածը, թե «և սահմանական աշխարհ սահմանեցի նմա զՊռոտին Արմենիան, զԿապադովկիա», կոնկրետացնում է, ո՞վ նվաճեց այն հայերից. «զոր հանեալ էր ի Հայոց Պոմպէի» (էջ 18): XI-XIII դդ. «ադետ կեղծարարը» ո՞րտեղից գիտե, որ Փոքր Հայքը հայերից նվաճել էր Պոմպեոսը, փաստ, որի ճշգրտությունը այս դեպքում ևս հաստատվում է[79]: Նշենք այստեղ, որ «Պռոտին Արմենիան» (*Πρώτην 'Αρμενίαν*) հունարենում հայցական հոլովով է և ուղիղ խնդիր, ուղղականը՝* Πρώτη 'Αρμενία *է:: Սա ցույց է տալիս, որ աղբյուրն իր ձեռքի տակ ուներ հունարեն բնագիր: Հայերենում «Առաջին Հայք» և՛ ուղղականում, և՛ հայցականում նույնն է: Հակառակ այն բանի, որ Ս. Երեմյանը «Պռոտին Արմենիան» ուզում է մեկնաբանել «Նախասկզբնական Հայք»[80], այն Առաջին Հայք է: Բայց եթե կա Առաջին Հայքը, տրամաբանական է Երկրորդ Հայքի առկայությունը: Ըստ Մոմզենի, 386 թ. ոչ ուշ գրված* Laterculus Polemii Silvii *հռոմեական նահանգների ցանկում Պոնտոսի դիոցեզում հիշվում են. 7) Armenia Minor և 6) Armenia Major, այսինքն՝ Փոքր Հայքը և Մեծ Հայքը, ինչպես դրում է Ն.Ադոնցը, «հակառակ պատմական իրականության»[81]: Կ.Գյուտերբոկը ենթադրում է, որ խոսքը վերաբերում է Առաջին և Երկրորդ Հայքերին, որոնք ցանկի հեղինակը կարող էր Փոքր և Մեծ Հայք անվանել, քանի որ Երկրորդ Հայքը շատ ավելի խոշոր էր, քան Առաջին Հայքը[82]: Առաջին Հայքի մեջ մանում էին, բացի Սեբաստիա քաղաքից, Սեբաստիա նահանգը, Նիկոպոլիսը, Կողոնիան, Սատաղը, Սեբաստուպոլիսն ու Վերիսան: Երկրորդ Հայքի մեջ՝ Մելիտենեն, Արկան, Արաբիսոսը, Կուկուսոսը, Կոմանան և Արիարաթիան[83]:*

---

[78] *Խ ո ր ե ն ա ց ի, էջ 46:*
[79] *Ն. Ա դ ո ն ց. Նշվ. աշխ., էջ 90, 115, 168:*
[80] *Հայ ժողովրդի պատմություն. հ. 1, Երևան, 1971, էջ 234:*
[81] *Ն. Ա դ ո ն ց. Նշվ. աշխ., էջ 102:*
[82] *Կ. Գ յ ու տ ե ր բ ո կ. Հռոմեական Հայաստան և հռոմեական սատրապությունները Դ-Զ դարերում (գերմ. թարգմ. Հ. Մկրտիչ վ. Նորշուան). Վիեննա, 1914, էջ 38:*
[83] *Ն. Ա դ ո ն ց, Նշվ. աշխ., էջ 15-16:*

*«Դաշանց Թղթի» Արևելահռոմեական կայսրության տարածքի նահանգների նշված մանրամասն ու մեր կարծիքով ճշգրիտ ցանկը ի՞նչ է իրենից ներկայացնում: Դեռևս 1862 թ. հրատարակվեց այսպես կոչված հռոմեական նահանգների Վերոնյան ցանկը: Հրատարակչի քննությունից պարզվում է, որ նահանգների պարզ թվարկումը իր ներքին կազմով վերաբերում է 297 թ. և Մոմզենի ենթադրությամբ իրենից ներկայացնում է Դիոկղետիանոս կայսեր նահանգային ռեֆորմը*[84]*: Խնդրի վերաբերյալ գոյություն ունի և Վերոնյան ցանկի նման՝ Laterculus Polemii Silvii, գրված, ըստ հեղինակի, 448 թ., բայց ըստ Մոմզենի՝ 386 թ. ոչ ուշ*[85]*: Արդ, «Դաշանց Թղթում» արդյո՞ք չի արտահայտված հենց Դիոկղետիանոսի նահանգային ռեֆորմը, և այն խնդրին վերաբերող հնագույն և ճշգրիտ փաստաթուղթը չէ՞, որ համարեցված է կեղծիքի ոգուն. Սեղբեստրոսը դիմում է Արևելահռոմեական կայսրության նահանգների ղեկավարներին, որպեսզի նրանցից և ոչ ոք չհանդգնի «դիմադարձ լինել հոյակապ հրամանաց հզօրին Հայոց, կայսերակերպին Տրդատայ» (էջ 16), այդ թվում և Աֆրիկայի ու Արաբիայի գլխավորներին... Ստորև մենք դեռ առիթ կունենանք «Դաշանց Թղթի» մի շարք փաստերի էլ անդրադառնալու, որոնք միանգամայն ճիշտ արտահայտում են IV դ. սկզբի իրական պատկերը, ուստի մեր ենթադրությունը, թե «Դաշանց Թղթում» բերված է Դիոկղետիանոսի վարչական բաժանումը, անհիմն հայտարարություն չէ: Դրա վերաբերյալ թող իրենց խոսքն ասեն մասնագետները:*

*Այսպիսով, Կոստանդին կայսրը, ըստ «Դաշանց Թղթի» Տրդատին զիջում է Փոքր Հայքի փոքր մասը, հարկավ իրեն պահելով մեծը: Սրբոց Նվստրատիոսյանց Վարքում (Դիոկղետիանոսի ժամանակ) հենց «Երկրորդ Հայքի» քաղաքները կայսրության կազմում են հիշվում*[86]*:*

*«Դաշանց Թղթում» ղծվում են և Տրդատի թագավորության սահմանները. «Եւ այս է բուն հայրենիքն Տրդատայ ի լեռնէն Արճիոյ*[87]* մինչև ի լեառն Արարատայ*[88]* և ի Գայլ գետոյն Ելեսպոնտացւոց մինչև ցհզօր գետն Տիգրիս մեծ. իսկ ի կողմանց Քոհաստանեաց որչափ բազուկ իւր բաւեսցէ և թուրն թափեսցէ» (էջ 18)*[89]*:*

*Թեև Կոստանդին Մեծը «Դաշանց Թղթում» համարվում է հռոմայեցվոց կայսր, հաստատված Հռոմում, Արևմտահռոմեական պետության տարածքի մասին մեր աղբյուրում բերված տեղեկությունները տարօրինակ են ու ծիծաղելի: Այն տարածվում է «ի Հերակլէսի արձանէն*[90]* մինչ ի յարձանն Մե-*

---

[84] *Նույն տեղում, էջ 101:*

[85] *Նույն տեղում, էջ 102:*

[86] *Հ. Բ ա ր թ ի կ յ ա ն. Քրիստոնեությունը Փոքր Հայքում: Ազգային-կրոնական և սոցիալ-քաղաքական իրավիճակը նահանգում III դ. երկրորդ կեսին (ըստ IV դ. սրբոց վկայաբանության).– «Պատմա-բանասիրական հանդես», 2001, № 2, էջ 10-17:*

[87] *Այժմ Էրջիաս դաղ Թուրքիայում: Հմմտ. Աշխարհացոյց Մովսեսի Խորենացւոյ Ցաւելուածովք նախնեաց. Վենետիկ, 1881, էջ 25: «Առաջին Հայք (Պոնտին Արմենիան – Հ. Բ.) յիլից կալով Առաջին Կապադովկիոյ առ երի Բ. Հայոց, և սահմանի յելից Եփրատաւ. և լեառն ունի զԱռգէոս»:*

[88] *«Դաշանց Թղթի» 1709 թ. հրատարակության մեջ սխալ է. «և ի լեռնէն Արարադայ և ի Գայլ գետոյն Ելեսպոնդացւոց մինչև ցհզօր գետն մեծ Տիգրիս» (էջ 408):*

[89] *«Սահման քաջաց զէն իւրեա՞նց»:*

[90] *Ջիբրալտար նեղուցը (հն. Գադիրա): Այստեղ «արձան» նշանակում է «սյուն»:*

լիտեան,[91] և ի Սեպտէ կղզւոյն[92], որ հայի հանդէպ Ատլաս լերինն[93] մինչև ի Սիկիլիայ կղզին, յորում կայ հրակատարն բուռկանիայ» (24): Առաջինում՝ լիակատար վարչական բաժանում, երկրորդում խղճուկ աշխարհագրական, որ, ոչ ավելի, ոչ պակաս, համարվում է Մեծն Կոստանդնի Հռոմեական կայսրության «աշխարհ» «որք կան ի մերում աշխարհիս»: Կարծես գոյություն չունեն հենց ինքը՝ կայսրության բունը՝ Իտալիան, ժամանակակից Իսպանիայի, Ֆրանսիայի, Բրիտանիայի, Գերմանիայի, Ավստրիայի տարածքները, Դալմատիան, Պանոնիան և այլն, և այլն: Հետաքրքիր է, որ կան, բայց ոչ որպես Հռոմեական կայսրության մաս, այլ, ինչպես որ պիտի լիներ XIII դ., կեղծիքի շարադրման ժամանակ՝ որպես առանձին անկախ պետություններ եկեղեցական իմաստով Հռոմի պապին ենթակա: «Հրաման հանի,— ասում է Սեղբեստրոս պապը,— ի հնազանդեալք իմ ի մերձակայ յաղգս և յաշխարհս Իտալացւոց, Ալամանացւոց (Գերմանացւոց — Հ. Բ.), Իսպանիացւոց և ժողովեցի զամենայն արքեպիսկոպոսունս և զամենայն ուխտ եկեղեցւոյ» (էջ 24): Պարզ չէ՞, որ նախասկզբնական պայմանագրի բնագրում Արևմտահռոմեական կայսրության տարածքը հիշատակված չէր ամենևին, և, երևի, չպիտի էլ հիշվեր, քանի որ պայմանագիրը կնքվում էր Արևելահռոմեական կայսրության և Հայաստանի միջև: Պարզ է, երբ ստեղծվում էր, մեր համոզմամբ, XIII դ. առաջին կեսի «կեղծիքը», Հռոմեական կայսրության վաղեմի նահանգները (միջնադարյան Եվրոպան) ինքնուրույն պետություններ էին, Ֆրանսիայի, Գերմանիայի, Անգլիայի, Հունգարիայի թագավորություններ, Իտալիան բաժանված էր Իտալիայի և Սիկիլիայի թագավորությունների ու պապական պետության («կեղծիքի» ստեղծողը չէր կարող դրանք Կոստանդին Մեծի և Սեղբեստրոս պապի ժամանակակից համարել), իսկ քանի որ Հռոմի կողմից գործող անձինք էին Հռոմի կայսր Կոստանդինը և Հռոմի աթոռի հոգևոր պետ Սեղբեստրոսը, պետք էր մի կերպ հիշատակվեր և կայսրության արևմտյան մասը: Եվ դա կատարվեց շատ պրիմիտիվ ձևով, կարծես այն սահմանափակվում էր Սեպտե (որ սխալմամբ կղզի է համարվում), ապա իրոք կղզիներ Մելիտեն (Մալտան) և Սիկիլիան: Վերջին երկուսը հավանաբար վերցված Գործ Առաքելոցից (28,1, 28,12):

Արևելահռոմեական կայսրության վարչական բաժանումից բացի, «Դաշանց թղթում» կա և դրա տարածքի մասին համառոտ նշում: Այն ձգվում է «ի դրանէ Բիւզանդացւոց մինչև ի դրունս հոնաց» (էջ 15), ընդ որում չկա «Կոստանդնուպոլիս» հասկացողությունը, այսինքն արտացոլում է մինչև 330 թ. ընկած ժամանակը, երբ Բյուզանդիոն քաղաքը պաշտոնապես ստացավ Կոստանդին կայսեր անունը:

«Դաշանց թղթում» ասվում է, որ Տրդատ թագավորի և Գրիգոր Լուսավորչի Հռոմից վերադառնալու նախօրյակին Մեծն Կոստանդնի հրամանով «ժողով եղև մեծ առաջի սուրբ Առաքելոյս» (նկատի ունի «ի վկայարանս Սուրբ Առաքելոյս»), ուր գտնվում էին Պետրոս և Պողոս առաքյալ-

---

[91] Մալտա կղզին:

[92] Սեպտեն կղզի չէ, այլ հենց Ջիբրալտար (արաբ. Ջեբել ալ-Տարիք – Տարիքի լեռ): 711 թ. գրավել էր արաբ զորավար Տարիք իբն Սայիդը, որը և կոչվեց իր անվամբ:

[93] Հյուսիսարևմտյան Աֆրիկայի լեռնաշղթա:

ների «աստուածամուխ սուրբ նշխարները» (էջ 13): Ժողովին ի միջի այլոց. մասնակցում էին «320 Սինկղիտոսք»[94] (էջ 14) : Այդ ժողովում «ուխտ և դաշինս հաստատեցաք յաւիտենական ի միջի մերում ... արիական Լատինացիքս և անյաղթելի Թորգոմացիքս» (էջ 14): Սակայն վերջաբանում այդ ժողովը չի կոչվում «սինկղիտոսաց» ժողով, այլ «սիւնհոդոս» (էջ 30): Առաջին հիշատակման ժամանակ ժողովը կատարված է լինում «առաջի սուրբ Առաքելոցս», երկրորդ դեպքում «ի տօնի սուրբ Առաքելոցս»: Ստեփանոս Ասողիկի վկայությամբ Կոստանդինը «յերկրորդ ամի թագաւորութեան իւրոյ փոխեաց զարքունիսն ի Հռովմայ ի Բիւզանդիա կղզի և պարսպեալ զնա քաղաք մեծ անուանեաց յիւր անուն Կոստանդնուպօլիս, և բերեալ ընդ իւր մասն ինչ ի նշխարաց սրբոյն Պետրոսի և Պօղոսի առ ի հաստատութիւն թագաւորութեանն յետոյ շինէ զմեծ և զհռչակաւոր եկեղեցին ի տիեզերական մայրաքաղաքին, զոր յանգագոյն անուամբ Առաքելոց անուանեաց. և յերրորդ ամին արար ժողով ՅԺԸ հայրապետացն ի Նիկիա»[95]:

«Դաշանց Թղթի» «Սուրբ Առաքելոց» վկայարանը Կոստանդնուպոլսի Առաքելոց տաճարը չէ՞, Պետրոս ու Պողոս առաքյալների «աստուածամուխ սուրբ նշխարները» Կոստանդին կայսեր Հռոմից Կոստանդնուպոլիս բերած նրանց «մասն ինչ նշխարաց»-ը չէ՞, 320 «սինկղիտոսք»-ը (սենատորները) Նիկիայի Ա տիեզերական ժողովի (հունարենում σύνοδος - «սիւնհոդոս» (ինչպես «Դաշանց Թղթում» «ի մեծ սիւնհոդոսի», այդպիսին էր իրոք Նիկիայի Առաջին տիեզերական ժողովը) 318 եպիսկոպոսները չե՞ն: «Սիւնհոդոսը» «սինկղիտոս» չէ, եկեղեցաժողով է: Չմոռանանք, որ Արևելյան եկեղեցու IV - VIII դդ. գումարված յոթ տիեզերական, ինչպես նաև բոլոր նահանգային, տեղական, պատրիարքական ժողովները «սիւնհոդոս» են կոչված:

Այժմ ավելի ուշադիր և պատասխանատվությամբ անդրադառնանք «Դաշանց Թղթի» մի առեղծվածի ևս: Բնագրի սկզբում, Տրդատ-Կոստանդին պայմանագրի ստորագրության առիթով ասված է. «Ստորագրեցաւ հրովարտակս հրամանաւ խմով մեծի Պապուս Հռոմայեցւոց, Եւսեբիոսի, որ և Սեղբեստրոս» (էջ 12): Կ. Շահնազարյանցը դա համարում է «յայտնի վրիպակ» (էջ 71) և բացառում Եւսեբիոսի գոյությունը: Բայց այդպե՞ս է արդյոք: Հայ աղբյուրներից Ագաթանգեղոսը, շարադրելով Տրդատի և Գրիգոր Լուսավորչի Հռոմ գնալը, ցույց է տալիս, որ նրանց դիմավորելու եկան «Կոստանդիանոս, և հայրապետն մեծ, արքեպիսկոպոսն աշխարհամուտ դրանն, ո՛րում անուն կոչէր Եւսեբիոս»[96]: Նա մնում էր «յարքունա-

---

[94] Արաբական թվերը Կ. Շահնազարյանինն են: Բնագրում հարկավ հայոց այբուբենի տառերով:

[95] Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն Տիեզերական, ի Ս. Պետերբուրգ, 1885, էջ 137: Ասողիկի շարադրանքում այստեղ կան մի շարք անճշտություններ: 330 թ. մայրաքաղաք դարձած Բյուզանդիոնը Կոստանդնի թագավորության երկրորդ տարին չէր, այլ 25-րդը, ոչ էլ 325 թ. գումարված Նիկիայի ժողովը թագավորության երրորդ տարին: Բացի այդ Բյուզանդիոնը կղզի չէ: Թերևս գրչական սխալնե՞ր:

[96] Ա գ ա թ ա ն գ ե ղ ո ս, էջ 461: Ձեռագրերում նախապես եղել է Եւսեբիոս, հետագայում ձեռագրի լուսանցքում «ուղղված» է Սեղբեստրոս, ապա «կոչիւր և Սեղբեստրոս», որպեսզի վերջում մնա «Սեղբեստրոս» և նույնացվի Հռոմի պապին, քանի որ կեղծիքի հեղինակը Կոստանդին Մեծին պետք էր Հռոմում տեսնել:

կան պաղատանն»: Հիշյալ ժամանակաշրջանում Հռոմում Եվսեբիոս անունով պապ գոյություն չի ունեցել: 309/310 թթ., այսինքն քրիստոնյաների հալածանքների ժամանակ ընդամենը չորս ամիս աթոռակալել է Եվսեբիոս անունով մեկը, որ Մաքսիմիանոս կայսեր կողմից Սիկիլիա աքսորվեց ու տեղում էլ վախճանվեց: Արդ, եթե Արևելահռոմեական կայսրության մայրաքաղաքը Նիկոմեդիան է, ապա Եվսեբիոսին այնտեղ պիտի փնտրել: Եվ նա ոչ այլ ոք է, քան քաղաքի նշանավոր եպիսկոպոս Եվսեբիոս Նիկոմեդացին: Նա 318 թ. գլխավորում էր Նիկոմեդիայի եկեղեցին: Թեոփանես Խոստովանողը գրում է, թե Կոստանդին կայսրի 18-րդ տարում (324 թ.) «ինչպես ասում են ոմանք, Մեծն Կոստանդինը իր Կրիսպոս որդու հետ, Հռոմում Սեղբեստրոսի կողմից մկրտվեց: Ավագ Հռոմում մինչև այսօր, որպես դրա ապացույց ցույց են տալիս ավազանը, որում նա մկրտվեց Հռոմում Սեղբեստրոսի կողմից բռնակալների վերացումից հետո: Իսկ արևելքցիները ասում են, թե նախքան վախճանվելը նա մկրտվեց Եվսեբիոս Նիկոմեդացու կողմից: Հենց այդ քաղաքում էր նրա մահը վրա հասել: Բայց ինձ ավելի հավանական է թվում, թե նա Հռոմում մկրտվեց Սեղբեստրոսի կողմից»[97]: Պարզ է, թե ինչու է դա հավանական Թեոփանեսի համար: Եվսեբիոս Նիկոմեդացին, ինչպես դեռ պիտի տեսնենք, արիոսական էր:

Ինչպես և մեր Աղաթանգեղոսը, Սոզոմենոսը ցույց է տալիս, որ Եվսեբիոս Նիկոմեդացին վայելում էր Կոստանդին կայսեր հովանավորությունը. «Նիկոմեդացվոց եկեղեցվո այն ժամանակվա առաջնորդ Եվսեբիոսը զարգացած, արքունիքում մեծ պատվի արժանացած այր էր» (Εὐσέβιον τὸν τότε προεστωτα τῆς Νικομηδέων ἐκκλησίας, ἄνδρα ἐλλόγιμον καὶ *ἐν τοις βασιλείοις τετιμημένον*)[98].

Եվսեբիոս Նիկոմեդացին ամենաակտիվ մասնակցությունն է ունեցել Նիկիայի առաջին Տիեզերական ժողովում (որին անձամբ մասնակցում էր Կոստանդին կայսրը), հանդես գալով ի պաշտպանություն Արիոսի, որի համար էլ իր հակառակորդների կողմից չարունակ փնովվել է: Ըստ Սոկրատ Սքոլաստիկոսի. «Պաշտպանէին կարծեացն Արիոսի և այլք բազումք և մանաւանդ Եւսեբիոս, ոչ Կեսարացին, այլ նախկին եպիսկոպոսն եկեղեցւոյն Բիւրիտացւոց, որ յայնժամ եպիսկոպոսն էր ի Նիկոմիդեայ՝ երկրին Բիւթինեայ»[99]: Նրանք (նաև իր համախոհ Նիկիայի եպիսկոպոս Թեոգնիոսը), թեև մասնակցեցին Նիկիայի հավատո հանգանակի կազմմանը, Արիոսի ·կարդալույծ արվելուն չհամաձայնեցին և համապատասխան փաստաթղթի տակ չստորագրեցին[100]: Բյուզանդիոնը (Կոստանդնուպոլիսը)

---

[97] Theophanis Chronographia, recensuit Carolus de Boor, vol. I, Lipsiae, 1883, p. 17-18.

[98] S o z o m e n u s. Kirchengeschichte. Herausgegeben von Joseph Bidez, eingeleitet, zum Druck besorgt und mit Registern versehen von Günter Christian Hansen. Zweite, durchgeschene Auflage (GCS, N.F.4), Berlin, 1995 (1960), S. 34.

[99] *Սոկրատայ Սքոլաստիկոսի Պատմութիւն Եկեղեցական և Վարք Սրբոյն Սեղբեստրոսի եպիսկոպոսին Հռովմայ Թարգմանեալ Աբրաամու Գրիգորի Ջորափորեցւոյ (աշխատութեամբ Մեսրոպ վ. Տէր Մովսէսեան). Վաղարշապատ, 1897, էջ 10:*

[100] S o z o m e n u s. Kirchengeschichte, S. 42.

մայրաքաղաք հռչակվելուց հետո, 338 թ., Եվսեբիոս Նիկոմեդացին Նիկոմեդիայից տեղափոխվեց Նոր Հռոմ և դարձավ դրա եպիսկոպոսը[101]:

Այսպիսով, ըստ Ագաթանգեղոսի «Պատմության» գրչագրերի, նախապես եղել է «Եւսեբիոս», հետագայում, ինչպես ցույց են տալիս բնագրի հրատարակիչները, Բ խմբի գրչագրի լուսանցքում գրիչն «ուղղել է» Սեղբեստրոս, Դ խմբի ձեռագրում արդեն «Եւսեբիոս կոչիւր և Սեղբեստրոս», որպեսզի վերջում «Եւսեբիոսը» վերանալով մնա միայն «Սեղբեստրոսը»: Ուխտանեսը, ըստ նույն հրատարակիչների, գրում է՝ «զգացուցեալ ... մեծ հայրապետն Եւսեբեայ»: Արդ, «կեղծիքի» ստեղծողը հանդիպելով Եվսեբիոսի անվան, և քանի որ «իրադարձությունները» Կոստանդնի հետ տեղի են ունենում Հռոմում, նրան այնտեղ է տեսնում և նույնացնում Սեղբեստրոս պապի հետ. «Սարագրեցաւ հրովարտակս հրամանաւ իմով մեծի պապուս Հռովմայեցւոց Եւսեբիոսի, որ և Սեղբեստրոս» (էջ 12): Ուստի «Դաշանց Թղթի» առաջին մասի terminus ante quem-ը 318 թ. է, Եվսեբիոս Նիկոմեդացու Նիկոմեդիայի եպիսկոպոս դառնալու տարին: Պարզ չէ, մեր աղբյուրի առաջին հրատարակիչը ինչի հիման վրա է այն թվագրում 316 թ.:

Պատահական չէ նաև, որ Նիկիան և Նիկոմեդիան «Դաշանց Թղթում» լռությամբ են մատնված, առաջին պլանում Հռոմն է, քանզի կեղծիքի ամբողջ սյուժեի կենտրոնում Հռոմի պապ Սիլվեստրոսն է: Հռոմի պապի և Հռոմեական Սրբազան կայսրության կողմից կեղծիքի ստեղծման ժամանակ թագադրվել էր Կիլիկիայի թագավոր Լևոն II-ը և այդ բոլորը հենց այս իրողության արձագանքն է (հիշենք ակադ. Աշ. Հովհաննիսյանի ենթադրությունը): Չմոռանանք, որ և՛ Նիկոմեդիան, և՛ Նիկիան գտնվում էին հարևանությամբ, միևնույն նահանգի՝ Բյութանիայի սահմաններում[102]: Եվ պատահական չէ, որ Նիկոմեդիայում նստող Կոստանդին կայսրը[103] Ա Տիեզերական ժողովը գումարել տվեց իր նստավայրի հարևանությամբ՝ Նիկիա քաղաքում: Դեռ Կոստանդնուպոլիս չկար: Հռոմում նստած Կոստանդինը ինչու՞ ժողովը պիտի գումարեր սար Նիկիայում, և ինչպե՞ս Հռոմից պիտի հետևեր դրա ընթացքին: Նշենք մի իրողություն ևս: Դիոկղետիանոսի (պարզ է՝ առավել ևս Կոստանդին Մեծի ժամանակ) սենատը (սինկլիտոս) կորցնում էր իր նշանակությունը: Համապետական նշանակության հարցերը նրա քննության չէին դրվում, այն վերածված էր պալատականների խաղերով և նրա բոլոր որոշումները կայսեր հաստատման կարիքն ունեին: Սենատորների թիվը, հաստատված Օգոստոսի կողմից, 600 էր: Այսպիսով Տրդատ-Կոստանդին պայմանագրի առաջին կեսը վերաբերում էր դրա

[101] Theophanis Chronographia, t. I, p. 32, 33. Նաև Sozomenus Kirchengeschichte, S. 105. Հմմտ. Սոկրատ Սքոլաստիկոս. էջ 123 (Կոստանդին Մեծը «զԵւսեբիոս Նիկոմիդացի փոխեալ, մեծ քաղաքիս (Կոստանդնուպոլսի – Հ. Բ.) եպիսկոպոս ցուցանելով»: Հարկավ Կոստանդին Մեծը չէր կարող ինքը Եվսեբիոսին 338 թ. Կոստանդնուպոլիս տեղափոխել, քանզի 337 թ. վախճանվել էր:

[102] Հմմտ. Աշխարհացոյց. «Ունի Բիւթանիա ... մայրաքաղաքս երիս, զՆիկիա, զՔաղկեդոն, զՆիկոմիդիա»:

[103] Հմմտ. «... մինչդեռ անդէն ի քաղաքին (Նիկոմեդիայի – Հ. Բ.) էին երկոքին խոկ ինքնակալքն, որ երէցն էր քան զայլս ամենեսին (Կոստանդին Մեծը – Հ. Բ.) և զչորրորդ աստիճան ունէր իշխանութեան: Եւ սա յայնժամ առաջին քան զամենեսին արկական դործովս փառաւորեցաւ ի քաղաքին»: Եւսեբիոսի Կեսարացւոյ Պատմութիւն Եկեղեցւոյ: Ի ձեռն Հ. Աբրահամ վ. Ճարեան. Վենետիկ, 1877, էջ 625:

*գործելու ժամանակին, երկրորդը՝ պայմանավորվող կողմերի պետական սահմանների գծմանը:*

*Պայմանագրի հաջորդ կետը վերաբերում է պայմանավորվող կողմերի փոխադարձ պարտավորություններին. «Սիրելեացն սիրելի լինելով և թշնամեացն՝ թշնամի» (էջ 14), այսօրվա տերմինաբանությամբ՝ «բարեկամության և փոխադարձ օգնության պայմանագիր»: Հանվանե հիշված է և թշնամու անունը «Շապուհ մոխրապաշտ» պարսից արքայից արքա Շապուհ II-ը (309-379)[104]:*

*Փոխադարձ օգնության դաշնագրությունը հիշվում է և առարկայորեն: Մեծն Կոստանդինն իր իշխանավորներին կոչ է անում. «Միանգամայն կա՛զմ ու պատրա՛ստ լերուք ի զէն զինուորութեան արի արանց և ռազմամուտ երիվարաց զինեալք և զօրացեալք հզօր զօրութեամբս մերով, և գումարեսջի՛ք առաջին անպատմելի և անպարտելի քաջիդ Տրդատայ ի գործս պատերազմի ընդդէմ ատելոյն Քրիստոսի և թշնամւոյն իմոյ Շապհոյ մոխրապաշտի» (էջ 16 ): Եվ դա միանգամայն տեղավորվում է այդ շրջանում ծագած իրադրության շրջանակներում: Տրդատը «Հռոմ» գնաց, նկատի ունենալով այն հանգամանքը, որ պարսից Շապուհ արքան դադարեցրել է պատերազմը հայոց դեմ. «Ընդ հանգչելն Շապհոյ աըքայի Պարսից ի պատերազմացն,– գրում է Մովսես Խորենացին,– և ի գնալն Տրդատայ ի Հռոմ առ սուրբն Կոստանդիանոս»[105]: Բայց Շապուհ արքան փորձեց օգտագործել Տրդատի բացակայությունը երկրից. «...պարապ առեալ խորհրդոց Շապհոյ՝ նիւթէ չարիս ի վերայ մերոյ աշխարհիս. թողեալ զհիւսիսայինսն ամենայն, ելանել ի Հայս ժամ գնէ և իւր գալ Արեօք ի միւս կողմանէն»[106]: Եվ ահա՛ պարսից արքայի դեմ պատերազմում հայ-հռոմեական դաշինքը, որ արձանագրված է «Դաշանց Թղթում», դաշինք, որը հռոմայեցիներն հարգեցին: Տրդատը «զանգիտեաց ինքեամբ յատուկ մարտնչել ընդ Շապհոյ, մինչև եհաս բազմութիւն զօրուն Հռոմայեցւոց»[107]: Շապուհը պարտվեց և «աղաչեաց զյաղթողն Կոստանդիանոս խնդրել զհաշտութիւն և հաստատել զխաղաղութիւն մշտնջենաւոր»[108]:*

*«Դաշանց Թղթում» նշվում է և Տրդատի պարտականությունը տվյալ հարցում. «Զամենայն զէնս պատերազմականս և զհուդ հեծելոց և զամենայն պատրաստութիւն երիտասարդաց և երիվարաց հրամանաւ Տրդատայ տարէ՛ք ի կողմանս Ատրպատականաց և Արաղայ. և ժողովեցարու՛ք անհուն բազմութիւնք իբրև զաւազ առ ափն ծովու յաղագս պահակին Հոնաց Դարբանդայ և Դարիալայ. զի և զնոսա ի մեծն Տրդատ վստահացայ» (էջ 16):*

---

[104] *Կ. Շահնազարյանցը (էջ 101-102) «Սիրելեացն սիրելի լինելով և թշնամեացն՝ թշնամի» նախադասությունը «Դաշանց Թղթի» «երրորդ սուտը» է համարում, քանզի Գրիգոր Լուսավորչի քարոզած Ավետարանում Քրիստոսն ասել է. «սիրեցէ՛ք զթշնամիս ձեր» ... բարի արարէ՛ք ատելեաց ձերոց» (Մատթ. 5,44): Բայց չէ՞ որ իրականում սա Տրդատ-Կոստանդին դաշինքին է վերաբերում, Գրիգոր Լուսավորիչ չկա, ոչ էլ Քրիստոսի Ավետարան:*

[105] *Խ ո ր ե ն ա ց ի, էջ 227:*

[106] *Նույն տեղում:*

[107] *Նույն տեղում, էջ 234:*

[108] *Նույն տեղում, էջ 236:*

*Պայմանագրի հաջորդ կետը վերաբերում է հարկահանության հարցերին. «Եկեղեցի և եկեղեցականք և վանք և վանականք ամենայն գոյիւք իւրեանց ազատ և անհարկ լիցին յամենայն գիմոսական հարկաց արքունի» (էջ 23): «Իսկ որ ... ընդ հարկաւ արկանեն զեկեղեցի կամ զքահանայ, զկրօնաւոր կամ զհաւատաւոր, հարեա՛լ, հալածեա՛լ լիցին յերեսացն Աստուծոյ» (էջ 23): Չի բացառված, որ այս կետը խմբագրված լինի՝ հօգուտ եկեղեցու և նրա սպասավորների:*

*Պայմանագրով վերացվում է հռոմայեցի և հայ քաղաքացիներից գանձվող գլխահարկը. «Իսկ համօրէն մարդիկ սեփհական ազգացս Դաղմատացւոց և Հայոց ամենևին անգլխահարկ լիցին. բայց յամենայն վաստակոց իւրեանց հնգեակս տացեն ի դրունս արքունի և այլ դիմոս ի դրունս նոցա մի՛ երթիցէ» (էջ 23): Գլխահարկը վերաբերում էր միայն նվաճված ժողովուրդներին, «իսկ այլ ազգք և լեզուք, զորս մեծաւ պատերազմաւ հնազանդեցուցաք մեք և Հայք, նոքա պարտին մեզ զգին գլխոյ իւրեանց[109]: Բաց ի հնգեակէն և տան մեզ ոսկի և արծաթ ըստ կարի ի տարին երեք անգամ, ի գարունն ի գլխէ և յամառն յանասնէ և յաշուն յարդեանց մտէ» (էջ 23-24):*

*Հատուկ կետով անդրադառնում է վաճառականներին, որոնց սեփականությունը պաշտպանում է ավազակներից. «Բայց վաճառականք, որք շրջին անահ.ք և շահին ի մերում աշխարհիս և յամենայն իշխանութեան մերում, և ոսկէհանք և արծաթահանք բաժին հանցեն մեզ» (էջ 24):*

*Հաջորդ կետը վերաբերում է զնդաններր նետված, հարկավ ոչ քրեականների՝ գող, ավազակ, մարդասպան, այլ «քաղաքական» բանտարկյալների ազատ արձակմանը. այն է՝ բանտ նետված Փոքր Հայքի (Պոնտին Արմենիայի) հայ քրիստոնյաներին: Հայտնի են սրբոց Եվստրատիոսյանց, Ապա և Սեբաստիայի քառասուն վկաների վարքագրություններից[110]: Նրանք, ըստ «Դաշանց Թղթի», ազատ են արձակվում Գրիգոր Լուսավորչի հրամանով. «Իսկ ի հրամանէ Սրբոյ Լուսաւորչիս զերծցին բանդեալքն» (էջ 13): Հրաման է արձակում և Տրդատ արքան. «Իսկ ի հրամանէ քաջ արանց եղբօրս մեր (Կոստանդնի – Հ. Բ.) Տրդատայ դարձցին ամենայն դատապարտեալք, որ ի քրէական մեաաղս իցեն» (էջ 13)[111], այսինքն աշխատում են մետաղահանքերում:*

---

[109] *Իրավացի չէ Կ. Շահնազարյանը, երբ ջանալով ցույց տալ «Դաշանց Թղթի» սխալները, հիշում է «գին գլխոց» կոչված հարկը: Նա գրում է. «Գին գլխոց, որ Արաբաց խառնած ռաւի թարգմանութիւնն է: Հռոմայեցոց կայսրութեան ատենը ամեն հպատակ հարկ տալու պարտական էին, այլ ոչ* գին գլխոյ, *զոր Արաբիոյ մարգարէի յաջորդները հնարեցին այլակրօններու համար, իբրև փրկանք անոնց մահմետական չըլլալուն և չմեռնելուն» (էջ 95): Իրականում հենց Դիոկղետիանոսի հարկային ռեֆորմներում կալվածներ չունեցող քաղաքային բնակչությունը պարտավոր էր գլխահարկ վճարել (*capitatio plebeia*): Capitatio *հենց գլխահարկ է նշանակում* (caput - *գլուխ*): *Այն հիշված է Թեոդոսիոսի Դատաստանագրքում: Գյուղական բնակչությունը վճարում էր* annona, *գլխավորապես մթերք (ցորեն, յուղ, բուրդ, միս): Տես* G. O s t r o g o r s k y. *Նշվ. աշխ., էջ 67. Նաև՝* Н. А. М а ш к и н. *Նշվ. աշխ., էջ 595:*

[110] *Հ. Բ ա ր թ ի կ յ ա ն. Քրիստոնեությունը Փոքր Հայքում:*

[111] *Հմմտ.* De Vita Imp. Constantini, Lib. II, cap. XXX, col. 1008.- Νομος ἀπολύων ἐξο[illegible]ρισμιου καὶ βουλῆς καὶ δημεύσεως *(«Օրենք վերացնող աքսորը, բռնագրավման վճիռը»:* cap. XXXII - τοὺς ἐν μετάλλοις καὶ δημοσίοις ἀτιμασθέντας *(«Մետաղահանքերում*

Վերջապես, դաշնագրում առկա է նաև մի կենցաղային հոդված. «Եւ յերկուց ազգացս (իմա՛ հայ և հռոմայեցի – Հ. Բ.) ո՛չ ոք իշխէ միմեանց սուր քարշել, և որք յանդգնին՝ սուր նոցա մտցեն ի սիրտս իւրեանց» (էջ 14): Ասել է՝ հայը հռոմայեցուն և հակառակը իրավունք չունեն միմյանց կյանքի դեմ ոտնձգություն կատարել, իսկ կատարողները ենթակա են մահապատժի:

Սա վկայում է այն մասին, որ «Դաշանց Թղթի» առաջին իրական մասը ներառում է հարցեր ու կետեր, որոնք վերաբերում են տարբեր տարիների, բայց անկասկած Կոստանդնի և Տրդատի ժամանակներին: Ամենավաղ տարվան է վերաբերում քրիստոնյաներին բանտից ու աքսորավայրից ազատ արձակելը: Դա պիտի որ կատարված լիներ 313-ից հետո և պիտի վերաբերեր Կոստանդնի կողմից Տրդատին զիջված Փոքր Հայքի այն մասին, որ հիշված է որպես «Պռոտին Արմենիան» (Սեբաստիա քաղաքը և նույնանուն նահանգը, Նիկոպոլիսը, Կողոնիան, Սատաղը, Սեբաստուպոլիսը և Վերիսան), քանզի 301 թ. քրիստոնեության պետական կրոն հռչակած Հայաստանում հազիվ թե մնացած լինեին բանտարկված և աքսորված քրիստոնյաներ:

Վերջապես, կարևոր մի կետ ևս, որ ուսումնասիրողները ոչ միայն չեն գնահատել ըստ արժանվույն, այլ պարզապես անտեսել են որպես հերթական կեղծիք: «Խնդրեցի յարքայէն Տրդատայ արս 300 հասակաւ և արիութեամբ հոյակապք[112], զորս և Արմէնք անուանեցի. և կարգեցի ի սպասաւորութիւն արքունական գահոյիս իմոյ, հզօրիչք գլխոյ իմոյ և թիկնապահք իմ ի տուէ և ի գիշերի, և առաջապահեստք իմ ի պատերազմի» (էջ 18) : Եթե նկատի առնենք աղբյուրում գրվածը, թե «հասին առ մեզ զօրքն Հայոց» ( էջ 12), Տրդատ արքան ընդառաջել է Մեծն Կոստանդնի խնդրանքին:

«Դաշանց Թղթի» վերոհիշյալ փաստը փայլուն կերպով հաստատվում է բյուզանդական խոշորագույն պատմիչ Պրոկոպիոս Կեսարացու կողմից: Նա իր «Գաղտնի պատմության» մեջ գրում է. «Նախկինում պալատի պահպանության համար առանձնացվել էին երեք հազար հինգ հարյուրից ոչ պակաս զինվորներ, որոնց սքոլարիոս էին անվանում: Ի սկզբանե անտի (Կոստանդնի ժամանակներից – Հ. Բ.) պետությունը սրանց վճարում էր շատ ավելի բարձր ռոճիկ, քան մնացած բոլոր զինվորներին: Անցյալում կայսրերը սրանց ընտրության ժամանակ նկատի էին առնում մարդկանց արժանիքները և հայերին էին տալիս նախապատվությունը (ἀριστίνδην ἀπολέξαντες ἐξ'Ἀρμενίων ἐς ταύτην δὴ τιμὴν ἦγον): Բայց սկսած Զենոն կայսրից, զինվոր անունը սկսեց տրվել երկչոտ և պատերազմի մասին ամենևին գաղափար չունեցող մարդկանց: Ժամանակի ընթացքում նույնիսկ ստրուկները դրամով գնում էին զինվորի կոչումը: Երբ թագավորությունը Հուստինոսը ստացավ (518 թ. Հ.Բ.), Հուստինիանոսը շատերին արժանացրեց այդ պատվին, նրանցից շատ դրամ կորզելով»[113]: Ստացվում

---

աշխատելու և պետական հանցագործություններ կատարած լինելու համար դատապարտված»), Նույն տեղում, սյունակ 1009:

[112] 1683 թ. հրատարակության մեջ ավելի ճիշտ՝ «հսկայակապս»:

[113] Պ ր ո կ ո պ ի ո ս Կ ե ս ա ր ա ց ի. Գաղտնի պատմություն (թարգմ., առաջաբան և ծանոթ Հ. Բարթիկյանի). Երևան, 1987, էջ 114:

է, որ Կոստանդին Մեծի ժամանակներից սկիզբ առած կայսերական պալատի պահպանությունը հայերին վստահելը («Նախկինում», «անցյալում», «ի սկզբանէ անտի») գոյատևեց մինչև Զենոն կայսր թագավորությունը (474-475, 476-491 թթ.): Զինվորների թվաքանակի տարբերությունը՝ Կոստանդինի ժամանակ 300 հոգի, Հուստինիանոս I-ի օրոք՝ 3500, բացատրվում է մայրաքաղաքի ընդարձակմամբ, նաև պալատական բյուրոկրատիայի զգալի աճով՝ ավելի քան երկդարյա ժամանակամիջոցում: Իսկ թե ինչու Կոստանդինը և հաջորդող կայսրերը նախապատվությունը տալիս էին հայերին, բացատրվում է ոչ միայն նրանց արիությամբ, այլ նախ և առաջ «օտարությամբ»: Տեղյակ չլինելով օտար երկրին և նրա լեզվին, չէին մասնակցի պալատական հեղաշրջումներին և քաղաքական ներքին պայքարին, կծառայեին հավատարմաբար:

Քանի որ հիշեցինք Պրոկոպիոս Կեսարացուն, անդրադառնանք նաև Կոստանդին Մեծ կայսեր Տրդատ թագավորին շնորհած ընծաներին, որոնց մասին խոսվում է «Դաշանց Թղթում»: Կոստանդինն ասում է. «Պսակեցաք զմեծ արքայն Տրդատ կայսերական թագիւ լուսաւոր ակամբ յօրինեալ և մեծամեծ մարգարտօք շրջապատեալ, և զարդարեցաք զհսկայագոյն հասակ նորա ծովային ծիրանեօք, ոսկենական մետաքսօք, մարգարտամանեկօք ես և զանգին դաւտի հաւրն իմ հզաւրի ածի ընդ մէջ Տրդատայ քաջի… անգին դահարօք և զունագեղ գնդօք, տպազիոնօք, սիդնայօք, խռսուկեփաղօք…[114] և միանգամայն իսկ չորս հազար զարդուք…» (էջ 16-17): Այս առթիվ հիշենք Մովսես Խորենացու գրածը, որ Հռոմի կայսր Կոստասը Հայոց Խոսրով արքային ուղարկեց «ծիրանիս հանդերձ պսակաւ»[115]: Ինչպես նաև Թեոփանես Խոստովանողի գրածը լազերի թագավոր Ցաթիոսի մասին: Պատմիչը (Ալեքսանդրյան տոմարի 6014 թվականի տակ – մ.թ. 522) ցույց է տալիս, որ պարսից Կավատ արքայի (488-531) կողմից թագավոր հռչակված Ցաթիոսը, ապստամբելով Կավատի դեմ, եկավ Բյուզանդիոն՝ Հուստինոս կայսեր մոտ, խնդրեց իրեն քրիստոնյա մկրտել և թագավոր ճանաչել: Հուստինոսն ընդառաջ գնաց, նրա գլխին թագ դրեց, հագցրեց թագավորական սպիտակ քղամիդ (φορέσας στέφανον - պսակ καὶ χλανίδα βασιλικήν: Նրա գոտին ոսկե էր՝ մարգարիտներով ազուցված[116]: Հովհաննես Մալալան ևս հիշում է այս դեպքերը: Ցաթիոսին, ըստ նրա, շնորհված էին «հռոմեական թագավորական պսակ» (στεφάνιον 'Ρωμαικὸν βασιλικόν), «սպիտակ ամբողջությամբ մետաքսյա քղամիդ» (χλαμύδα ἄσπρον ὁλοσήρικον): Նրա հագին կային իր երկրից (Լազիկայից) բերած կոշիկները, դրանք պարսկական ձևի էին՝ մարգարիտներով ազուցված, ինչպես և իր գոտին, այն ևս մարգարիտներով էր»[117]:

Այդ, պարզ չէ՞, որ «Դաշանց Թղթում» Տրդատի մասին Կոստանդին կայսեր ասածը, թե «պսակեցաք զմեծ արքայն Տրդատ կայսերական թագիւ», «և զանգին դաւտի հօրն իմ հզօրի ածի ընդ մէջ Տրդատայ քաջի»

---

[114] «Դաշանց Թղթի» 1709 թ. հրատարակության մեջ՝ «խռոսկեփայլօք» (էջ 406, կարդա՝ «խռսոսկեփայլօք»), հուն. χρυσοκέφαλος «ոսկե թագ կրող», բառացի «ոսկեգլուխ»:

[115] Խ ո ր ե ն ա ց ի, էջ 261:

[116] Theophanis Chronographia, vol. I, p.168-169.

[117] Ioannis Malalae Chronographia. Ex recensione Ludovici Dindorfii, Bonnae, 1831, p. 413.

կեղծիք չէ, այլ իրական փաստ: Իհարկե հավատալու չէ, որ այդ դոտին Կոստանդին Քլորոսինն էր...

«Դաշանց թղթի» վերը բերված նախադասության մեջ առկա է և մի առեղծված, որի լուծման համար անհրաժեշտ է կանգ առնել Արշակունյաց Հայաստանի քաղաքական իրադրության վրա, որ ստեղծվել էր Հռոմեական կայսրության և Սասանյան Իրանի միջև 298 թ. Մծբինի հաշտության պայմանագրով: Այդ թվականին, ինչպես գրում է Ն. Ադոնցը, «Սասանյանների կողմից ցնցված հայ Արշակունիների գահը հռոմայեցիների օգնությամբ նորից վերականգնվեց Մեծ Հայքում: Այդ ժամանակվանից սկսած՝ Հայաստանն ընկավ կայսրերի քաղաքական ազդեցության տակ կամ, ինչպես պատմագիրն է արտահայտվում[118], դարձավ juri Romano obnoxia և սկսեց օգտվել նրանց հովանավորությունից»[119]:

Նախ անդրադառնանք 298 թ. 40-ամյա հաշտության պայմանագրով Հռոմեական կայսրությանն անցած հարավարևմտյան Հայաստանի գավառներին՝ Անգեղտան, Մեծ Ծոփքին, Աղձնիքին, Կորդուքին և Ծավդեքին[120]: IV դ. ընթացքում, հատկապես Մեծ Հայքի 387 թ. բաժանումից հետո, այս տարածաշրջանի այլ կազմավորումներ ևս անցան Հռոմեական կայսրության վերահսկողության ներքո, ձևավորելով ինքնավար «սատրապություններ»[121]: Հուստինիանոս կայսեր ժամանակաշրջանում դրանք, ըստ Պրոկոպիոսի, հինգն էին, իսկ ըստ Հուստինիանոս կայսեր 31-րդ նովելլայի՝ վեց. Անձիտ, Անգեղտուն, Հաշտեանք, Ծոփք, Ծոփք Շահունյաց և Բաղնատուն[122]: Սրանց գլխին կանգնած էին, ըստ Պրոկոպիոսի, հայ սատրապներ (նախարարներ)[123], «որոնց իշխանությունը ժառանգական էր և ցմահ: Նրանք հռոմայեցիների կայսրից ստանում էին միայն նշանակներ»: Ահա և կարևորը Պրոկոպիոսի պատմածում: «Այդ նշանակների մասին արժե խոսել, քանի որ դրանք ոչ ոք չի տեսնելու այլևս[124]: Դա բրդյա քղամիդ էր, սակայն ոչ թե ոչխարի բրդից, այլ ծովից հավաքված: Այդ բուրդը բուսնում է պիննոս կոչված ծովային կենդանիների վրա (χλαμὺς ἡ ἐξ ἐρίων πεποιημένη, οὐχ οἷα τῶν προβατίων ἐκπέφυκεν, ἀλλ᾽ ἐκ θαλάσσης συνειλεγμένων. πίννους τὰ ζῷα καλεῖν νενομίκασιν, ἐν οἷς ἡ τῶν ἐρίων ἔκφυσις γίνεται): Ծիրանիի այն մասը, որի վրա սովորաբար գտնվում էր բեհեզը, ոսկուց էր: Քղամիդի վրա ամրացված էր լինում ոսկե ճարմանդ՝ մեջտեղում թանկագին քար: Այդ ճարմանդից ոսկե լայն շղթայով կախված էր երեք հակինթ: [Քղամիդից բացի] կար նաև մետաքսյա պատմուճան, ամենուրեք պաճուճված ոսկե զարդերով, որոնց պլումիա են անվանում, և մինչև ծունկը հասնող կարմիր կոշիկներ, որոնք սովորա-

---

[118] Ամմիանոս Մարկելլինոսը (XXIII,5):

[119] Ն. Ա դ ո ն ց. Նշվ. աշխ., էջ 103-104:

[120] Բ. Հ. Հ ա ր ո ւ թ յ ո ւ ն յ ա ն. Մեծ Հայքի վարչա-քաղաքական բաժանման համակարգն ըստ «Աշխարհացոյց»-ի. Երևան, 2001, էջ 141:

[121] Նույն տեղում, էջ 142-143:

[122] Պ ր ո կ ո պ ի ո ս Կ ե ս ա ր ա ց ի, էջ 190-191:

[123] Այդպես են կոչված և հայկական աղբյուրներում: Հմմտ. «զմեծամեծ նախարարսն սատրապսն Հայոց» (Փաւստոսի Բիւզանդացւոյ Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912, էջ 113):

[124] Զենոն կայսրը վերացրել էր Չորրորդ Հայքի հայ նախարարների իշխանությունը 484 թ. իր դեմ բարձրացված ապստամբությանը մասնակցած լինելու պատճառով:

բութ հագնում են հռոմայեցիների և պարսից թագավորները: Հռոմեական զորքը երբևիցե օգնություն չի ցուցաբերել ո՛չ հայոց թագավորին, ո՛չ էլ սատրապներին: Պատերազմական գործերում նրանք ինքնուրույն էին»[125]:

Տրամաբանական չէ՞ Կոստանդին Մեծի՝ Տրդատ թագավորին շնորհած «ծովային ծիրանու», «օքսունական մետաքսօք» և թանկագին քարերով ագուցված հանդերձանքի տակ տեսնել սկզբնական շրջանում՝ 298 թ. Հռոմին անցած հարավարևմտյան Հայաստանի Անգեղտան, Մեծ Ծոփքի, Աղձնիքի, Կորդուքի և Ծավդեքի ինքնավար նախարարներին, հետագայում նաև Չորրորդ Հայքի հինգ (կամ վեց) սատրապներին շնորհված նշանակները, ամենից առաջ «ծովային կենդանիների վրա բուսնող բրդից պատրաստված քղամիդը, մետաքսյա պատմուճանը»: Եթե նրանց հագած երկարաճիտ կարմիր կոշիկները[126] նույնն էին, ինչ հռոմայեցիների և պարսից վեհապետների հագածը, այն, որ նրանք պատերազմական գործերում ինքնուրույն էին, դա վկայությունը չէ՞ այն բանի, որ նրանք (ինչպես և Տրդատ արքան) ընդամենը վայելում էին կայսեր հովանավորությունը: Եվ այն, ինչ Տրդատը ստացավ Կոստանդնից, նրան «հասնում էր» ըստ կանոնակարգի:

Պրոկոպիոսից հետո «սատրապների» կայսրից ստացած «ծովային կենդանիներից» հավաքված բրդից կարված քղամիդի մասին այլևս իմացող չկար: XI–XIII դդ. կեղծիքի հեղինակը կարո՞ղ էր այդ մասին գիտենալ: Պարզ չէ՞, որ Տրդատի ստացածի մասին վկայությունը համապատասխանում է իրականությանը, որ այդ մասին գրված է եղել հենց IV դ. փաստաթղթում:

Քանի որ անդրադարձանք և ճշգրտեցինք «Դաշանց թղթում» առկա վերոհիշյալ «ծովային» թեման, ապա նշենք նաև, որ նրանում կան և ուրիշները: Կոստանդին կայսրը «ծովային ծիրանեօք»-ից բացի, Տրդատ թագավորին «օժտեց» «և արքունադրոշմ նշանաւոր կառօք և ծովային օդաթռիչ երիվարօք ոսկէսարօք» (էջ 17): Երիվարի առնչությամբ «օդաթռիչ» նշանակում է «արագավազ», «արագ սլացող»: Իսկ «ոսկեսարօ՞ք»: «Ոսկին» հասկանալի է, իսկ «սա՞րը»: Պարզվում է, որ նշանակում է «ձիու բաշ»: Ուրեմն, Տրդատի ստացածը կայսերական դրոշմը կրող կառք է, որին լծված են արագավազ, սրաթռիչ, սրարշավ «ոսկե (շեկ) բաշ» (վարսք) ունեցող երիվարներ: Ավելորդ է ասել, որ ուսումնասիրողները այս նախադասության վրա էլ ոչ մի ուշադրություն չեն դարձրել: Մենք ստիպված ենք մխրճվել հին հունական դիցաբանության մեջ և պարզել սրանց ինչ լինելը:

Հին հույների բանաստեղծական երևակայությամբ, երբ հեռու հորիզոնում տեսնում են քամու բարձրացրած փրփրած ու սլացող ալիքները, նրանց թվում է, թե դրանք իրենց բաշը աատանող, արագ խոյացող երիվարներ են: Այդպիսիք են ծովի աստված Պոսեյդոնի կառքին լծված ձիե-

[125] Պրոկոպիոս Կեսարացի, էջ 190-191:

[126] Թեոփանես Խոստովանողի վկայությամբ, Լազերի վերոհիշյալ թագավոր Ցաթիոսի կոշիկները ևս կարմիր էին, մարգարիտներով ագուցված «պարսկականների նման»: (τα γαρ τζαγγία αυτου *ρουσια* ησαν εχοντα μαργαριτας περσικῷ σχηματι). Theophanis Chronographia, p.168.

ըը[127]: Այդ մասին տեղեկանում ենք Հոմերոսի Իլիականից: Այսպես. Իլիական, գլ. 13, 23-24.

ἐνθ᾽ ἐλθών (ὁ Ποσειδῶν) ὑπ᾽ ὄχεσφι τετύσκετο χαλκοπόδ᾽ ἵππω
ὠκυπέτα χρυσέῃσιν ἐθείρῃσιν κυμόωντε.

(«Հասնելով այնտեղ (Պոսեյդոնը էգես վայրը – Հ. Բ.) կառքին լծեց երկու պղնձասմբակ ձիեր, որոնք սլանում էին արագ և ունեին ոսկե բաշեր»):

Նշենք այստեղ Արսեն Բագրատունու մեզ հետաքրքրող տողերի թարգմանությունը.

«Անդր հասեալ՝ զպղընձասըմբակ լըծեաց ի զոյգսըն զերիվարսն
ըսրաթռիչ օդապարիկս՝ ոսկեգիսակ վարսագեղեալս:

Ահա և Համաղասպ Համբարձումյանի թարգմանությունը.

«Հենց որ ստտվածն հասավ այնտեղ, կառքին լծեց ձիերն արագ
գեղեցկագես ու ոսկեբաշ պղնձակուռ սմբակներով[128]:

Արդ, կասկած կա՞, որ «Դաշանց Թղթում» ասվածը գալիս է Հոմերոսի Իլիականից: Կրկնենք. «արքունադրոշմ նշանաւոր կառօք և ծովային օդաթռիչ երիվարօք ոսկէսարօք»: Նշանակություն չունի «Դաշանց Թղթում» դա մուտք է գործել ուղղակի՞ Հոմերոսի Իլիականից, թե՞ վերցվել է որևէ այլ, անտիկ շրջանի երկի միջնորդությամբ: Բոլոր դեպքերում XI–XIII դդ. կեղծիքի հեղինակն այդ մասին հազիվ թե գաղափար ունենար: Մնում է խորհրդածել և հայոց «Հզօր հաղարապետաց» Կոստանդնի պարգևած «Նժոյգ ծովայինք»-ի շուրջը ևս:

Կանգ առնենք «Դաշանց Թղթի» մի այլ «ծովային» թեմայի վրա: Մի շատ հետաքրքիր, բայց և անչափ կարևոր, նախադասություն և բառ հանդիպում են Մեծն Կոստանդնի կողմից Տրդատ թագավորին (և իր՝ Գրիգոր Լուսավորչին) մատուցած պարգևների թվում: Այդ նախադասությունը Կ. Շահնազարյանցի հրատարակած «Դաշանց Թղթի» բնագրում մասամբ աղավաղված է, մասամբ կրճատված և մեզ հայտնի է աղբյուրի 1683 թ. editio princeps-ից և 1709 թ. հրատարակությունից: Կ. Շահնազարյանցի հրատարակության համաձայն, հյուրերին ճանապարհելու առիթով Կոստանդինն ասում է. «Ետու տուրս մեծամեծս և պատրաստեցի զամենայն պիտոյս նոցա ընդ ծով և ընդ ցամաք ճանապարհին, որ յԱրևելս նաև զօրս արքունականս մինչև ի սահմանս Հայոց» (էջ 28): Իրականության մեջ նախադասությունն այսպիսին է. «յԱրևելս» բառից հետո կարդում ենք. «զնաւս նորս (Կ. Շահնազարյանցի հրատարակության մեջ՝ «նաև զօրս») արքունականս և գիոսկորանչանս» (1683 թ. հրատ. էջ 32, 1709 թ. հրատ. էջ 419): «Դիոսկորանչան» նշանակում է նավախելի (կամ ցռուկի) վրա դրված Դիոսկորոսների պատկերներ: Դիոսկորոսները՝ Կաստորն ու Պոլիդևկեսը, Զևսի և Լեդայի երկվորյակ որդիներն էին (հռոմեացիների մոտ՝ Pollux), որանցից՝ Երկվորյակների համաստեղությունը (լատ. Gemini): Հին հույների հավատալիքների համաձայն, եթե փոթորկի և ալեկոծության բռնված նավի վերևում երևա հիշյալ համաստեղությունը, դա փրկություն

---

[127] P. D e c h a r m e. Mythologie de la Grece Antique. Cinquieme edition. Paris, 1879, p.328.

[128] Հոմերի Իլիական. Հան ի հայ Հ. Արսէն Կոմիտաս Բագրատունի ի Մխիթարեանց, ի Վենետիկ, 1893, էջ 222: Հ ո մ ե ր ո ս. Իլիական (թարգմ. Հ. Համբարձումյան). Երևան, 1955:

*և ապահովություն կրերի: Համարվելով նավաստիների պահապան աստվածություններ, Դիոսկուրոսները կոչվում էին արքաներ, փրկիչներ, բարի պահապաններ: Մաքսիմոս Տյուրացի փիլիսոփան (II դ.) գրում է, որ ալեկոծության ենթարկված իր նավից երկնքում նկատել է Դիոսկուրոսների համաստեղությունը, որ ճանապարհ էր ցույց տալիս*[129]:

*«Հոմերոսյան» անվանվող, բայց նրան չպատկանող «Հիմներում» ցույց է տրված, որ ալեկոծության բռնված նավաստիները, կանգնելով նավախելի վրա, փրկության կոչ են անում Դիոսկուրոսներին (Զևսի որդիներին).*

οἱ δ᾽ ἀπὸ νηῶν
εὐχόμενοι καλέουσι Διὸς κούρους μεγάλοιο
ἄρνεσσιν λευκοῖσιν, ἐπ᾽ ἀκρωτήρια βάντες
πρύμνης,

*որոնց հանկարծակի երևալով (համաստեղությունը), դադարում են քամիները և խաղաղվում ալիքները*[130]:

*Վ. Վերեսաևի թարգմանությունը.*

И кораблям быстроходным, когда на неласковом море
Зимние бури бушуют. С судна вознося молитвы,
Люди на помощь зовут сыновей многомощного Зевса[131],

*այսինքն Կաստորին և Պոլիդևկեսին:*

*Նման մի նավի հիշատակության հանդիպում ենք «Գործք Առաքելոցում» (28.11): Հռոմի քաղաքացի Պողոս Առաքյալին տանում են Հռոմ դատելու: Ճանապարհին իրեն տանող նավը նախապես խարիսխ է գցում Մալթա կղզում (հունարենում՝* Μελιτη - *Մելիտե, որ Սուրբ Գրքի հայերեն թարգմանության հրատարակություններում սխալմամբ դարձել է Մելիտինե): Ձմեռելով այնտեղ «յետ երից ամսոց ելաք ի նաւ մի Աղեքսանդրացի որ ձմերեալ էր ի կղզւոջն նշանաւոր (բնագրում՝* παρασήμω, *այսինքն՝ նավի զինանշան) Դիոսկորացւոց»:* (ἀνήχθημεν ἐν πλοίῳ παρακεχειμακότι ἐν τῇ νήσῳ, Ἀλεξανδρίνῳ, *παρασήμῳ Διοσκούροις). Հմմտ. մեր աղբյուրի «նաւս նորա արքունականս և դէոսկորոսնշանս»:*

*XI-XIII դդ. «կնքմարարը» հազիվ թե Դիոսկուրոսների և նավի վրա գրված նրանց պատկերների մասին գիտենար*[132]*: Իսկ ովքեր, որ Տրդատին շնորհված նավի պատմությունը իրողություն էին համարում, ապա նրան նավարկելիս էին համարում, թեկուզև լեկյալ, Հռոմից: Այսինքն Տրդատը կտրեց Միջերկրականը, ափ դուրս եկավ Փոքրասիական թերակղզու.*

---

129 P. D e c h a r m e. Mythologie..., p. 500.

130 Ὕμνοι Ὁμηρικοί, XXXIII, 6.

131 Гомеровы гимны. Перевел с древнегреческого В. Вересаев, М., 1926, с. 81, стихи 7-9. *Վաղագույն հիմները վերաբերում են մ.թ.ա.* VIII- VII *դդ., մեզ հետաքրքրողը ստեղծված է Ալեքսանդրյան շրջանում (մ.թ.ա.* III- I *դդ.):*

132 XI-XIII *դարերի քրիստոնյա հեղինակի համար նավաստիների պահապան Ս. Նիկողայոսն է: Ծնվել էր* III *դ. կեսից հետո Լիկիայի Պատարա քաղաքում, ունևոր քրիստոնյաների ընտանիքում: Դեռևս Երուսաղեմ ուխտի գնալիս նրա նավը սարսափելի ալեկոծության հանդիպեց և իր աղոթքներով այն դադարեց: Այսուհետև նա համարվեց նավարկողների պահապան սուրբը: Մասնակցեց Նիկիայի եկեղեցաժողովին: Մահացավ 330 թ.: Ինքնըստինքյան հասկանալի է, որ* XI -XIII *դդ. նավարկողների նավերի վրա ոչ թե Դիոսկուրոսների «նշանները» պիտի լինեին, այլ Ս. Նիկողայոսինը: Այսօր էլ Հունաստանում բոլոր նավերը կրում են նրա սրբապատկերը: Եղել են հետազոտողներ, ովքեր Ս. Նիկողայոսի անձի մեջ տեսնում են Պոսեյդոնի վերակերպությունը քրիստոնեական պաշտամունքում:*

*չգիտես որ նավահանգիստը, ապա անցնելով Արևելահռոմեական կայսրության բազում նահանգներով, հասավ իր երկիրը (գնալիս էլ՝ հակառակը):*

*Նիկոմեդիայի վերաբերյալ մեր դատողությունները մեզ իրավունք են տալիս եզրակացնելու, որ Տրդատը Նիկոմեդիայից Հայաստան վերադարձավ Եվքսինյան Պոնտոսի վրայով, ընդամենն անցնելով մեկ նահանգի՝ Պափլագոնիայի ափերով: Ելենոպոնտոսը Ամասիա կենտրոնով գտնվում էր Տրդատի պետության սահմաններում (հմմտ. «Դաշանց Թղթում» (էջ 18). «եւ այս է բուն հայրենիքն Տրդատայ ի լեռնէն Արճիոյ մինչև ի լեառն Արարատայ և ի Գայլ գետոյն Ելեսպոնտացւոց (կարդա՛ Ելենոպոնտացւոց – Հ. Բ.) մինչև ցհզօր գետն Տիգրիս մեծ», և Նիկոմեդիայից չատ հեռու չէր:*

Ե) Տեխնիկական տերմիններ (terminus technicus) «Դաշանց Թղթում» - *«հայր», «եղբայր», «բարեկամ»*

*Այստեղ անհրաժեշտ է կանգ առնել մի քանի բառերի վրա, որոնք_իմաստավորված չեն ուսումնասիրողների կողմից, դեռ ավելին, սխալ են հասկացված: Խոսքը վերաբերում է «հայր», «եղբայր» և «բարեկամ» բառերին,_որոնք այլ բան չեն, քան terminus technicus, ոչ, ինչպես կարծում է ( կոնկրետ «եղբայր» բառի վերաբերյալ) Կ. Շահնազարյանցը՝ թե «որպես օրենք օգտագործված է դովեստական մակդիրներով» (էջ 20):*

*Սկսենք «հայր» բառից: Կոստանդին Մեծը, ըստ «Դաշանց Թղթի» մեզ հասած բնագրի, մի քանի անգամ այդպես է անվանում Գրիգոր Լուսավորչին. «Նաև զդաւանութիւն հաւատոյ սուրբ «հօրս մերոյ Գրիգորի» (էջ 13-14), «հոգեզարդ հայրս մեր» (էջ 14), «հայրս հանուրց Գրիգորիոս» (էջ 21): Կոստանդինը «հայր» է անվանում նաև Սեղբեստրոս պապին. «Արդ յայսմ հետէ հնազանդեմք հօրս մերոյ հոգևորի» (էջ 22): Այդ բոլորը, հարկավ, ապացույց չէ, որ Կոստանդինը («Հռոմում») անձամբ հանդիպեց Գրիգոր Լուսավորչին: Դա հետո է ավելացվել: Սա սովորական հաճոյախոսություն չէ, այլ կանոնակարգված սիստեմ, որ դոյատևեց չատ երկար՝ անցնելով Բյուզանդական կայսրություն: Կոստանդին VII Ծիրանածին կայսեր (913-959 թթ.) «Բյուզանդական արքունիքի Արարողություններ մասին» (De Cerimoniis aulae byzantinae) աշխատության երկրորդ գրքի 48-րդ գլուխը կրում է «Այլազգիներին ուղարկվող նամակների վերնագրերը» խորագիրը, ուր անդրադառնալով Հռոմի պապին ուղարկվելիք նամակին, ցույց է տրված, որ այն պետք է լինի այսպիսին. «Հանուն հօր և որդվո և հոգվույն սրբո՝ մեր մեկ և միակ ճշմարիտ աստուծո: Կոստանդին և Ռոմանոս[133] հավատացյալ ի նույն աստված հռոմայեցիների կայսրերը Հռոմի սրբազնագույն այսինչ պապին, մեր հոգևոր հոր»[131]: Ինչպես տեսնում ենք, դա բառացի համընկնում է Կոստանդին Մեծի Գրիգոր Լուսավորչի*

---

[133] *Ռոմանոս I Լեկապենոսը 920-944 թթ. Կոստանդին Ծիրանածինի կայսերակիցն էր:*

[134] *Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին 6: Բյուզանդական աղբյուրներ գիրք Բ: Կ ո ս տ ա ն դ ի ն Ծ ի ր ա ն ա ծ ի ն (թարգմ., առաջաբան և ծանոթ. Հրաչ Բարթիկյանի). Երևան, 1970, էջ 152:*

վերաբերյալ ավանդին «Հօրս մերոյ Հոգևորի»: Կոստանդին Ծիրանածինը հիշում է նաև Հայոց, վրաց և աղվանից կաթողիկոսներին ուղարկվող նամակների վերնագիրը. «Քրիստոսասեր տերերի հրամանքը այսինչ երկրի ամենաբարեպաշտ այսինչ [Հոգևոր] առաջնորդին»: Կոնկրետ Հայոց և աղվանից կաթողիկոսներին նա չէր կարող «Հոգևոր հայր» անվանել, քանզի մեջտեղում արդեն եկեղեցիների կես հազարամյակի բաժանում կար և մեկը մյուսին «հերետիկոս» էր համարում, իսկ վրաց քաղկեդոնիկ կաթողիկոսին էլ սրանց էր հավասարեցրել:

Տրդատը (ինչպես և Կոստանդինը) ևս Սեղբեստրոս պապին «Հոգևոր հայր» է անվանում. «Արդ յայսմ հետէ հնազանդեմք Հօրս մերոյ Հոգևորի» (էջ 22): Սա այն դեպքերից է, երբ ուզում են կեղծիք տեսնել ընդգծելով պապի վերադասությունը: Բայց դա պարտադիր չէ: Հռոմի պապը մինչև 867 թ. Բյուզանդական կայսրության մեջ չորս պատրիարքների թվում՝ Կոստանդնուպոլսի, Անտիոքի, Երուսաղեմի և Ալեքսանդրիայի, որպես Պետրոս առաքյալի փոխանորդ, համարվում էր առաջինը:

Անցնենք «եղբայր» բառին: Դեռևս Կոստանդնից առաջ Դիոկլետիանոս կայսրը գիմում է Տրդատին հետևյալ կերպ. «Ինքնակալ կայսր Դիոկղետիանոս առ սիրելի եղբայր Թագաւոր Հայոց Տրդատ, ողջոյն»[135]: Նույն կերպ շարունակում է և Կոստանդին Մեծը բուն Ագաթանգեղոսի «Պատմության» մեջ. «Սոյնպէս և արքային Տրդատայ իբրև եղբաւր սիրելւոյ, սէր ցուցեալ ուրախութեամբ մեծաւ...»[136]: Նաև «Դաշանց Թղթում». «Իսկ ի հրամանէ քաջ արանց եղբօրս մեր Տրդատայ» (էջ 13), «եղբայրս Տրդատ» (էջ 14), «բազկակից եղբայր մեր Տրդատ արքայ» (էջ 14), «համաշունչ եղբարք (Կոստանդինն ու Տրդատը, էջ 14), «զմեծ արքայն Տրդատէս, զհամամիտ և զհամակարծ եղբայրն իմ և զբազկակից բարեկամն» (էջ 15), «պարգևեցի և սիրելի եղբօրն իմոյ Տրդատայ» (էջ 18), «Պատմեցաք Տրդատայ վեհայ եղբօրս իմում» (էջ 22):

«Եղբայր» (լատ. *frater*) բառը ևս *terminus technicus* է, որ Հռոմեական կայսրությունում որոշակի իմաստ ուներ: Դա պատվո տիտղոս էր Հռոմին դաշնակից ժողովրդին տրվող (Aedui a senatu *fratres* appelati, C. Julius Caesar): Եվ եթե մեր բնագրում Կոստանդինն ու Տրդատը «փրեր միմեանց» են անվանված (էջ 14), իսկ Տրդատը «փրերս մեր Տրդատիոս» (էջ 20), ապա, որին բոլոր հետազոտողները արտակարգ նշանակություն են տալիս; «Թերևս միայն «փրեր» ֆրանսերեն բառը, որը միակը չէ այս տեքստում, բավական է գրության ուշ ժամանակի մասին գաղափար կազմելու» (էջ 84), ապա դա ոչինչ չի նշանակում, պարզապես նախասկզբնական «frater»-ի («եղբայրի») ուշ թարգմանությունն է:

Լատիներեն frater (եղբայր) բառը նույն իմաստով անցել է նաև Բյուզանդական կայսրություն, այս անգամ հուներեն ἀδελφός գանելով: Կոստանդին Ծիրանածինի վերոհիշյալ աշխատության մեջ մենք կարդում ենք. «Ռեքսին Սաքսոնիայի: Ռեքսին Բավարիայի (սա Նեմիցներ կոչված-

---

[135] Ագաթանգեղոսի Պատմության նորահայտ խմբագրությունը (Վարք) (թարգմ. բնագրից Հ. Բարթիկյանի, առաջաբան և ծանոթ. Ա. Տեր-Ղևոնդյանի).– «Էջմիածին», 1966, №8, 1966, էջ 46:

[136] Ագաթանգեղոս, էջ 462:

ների երկիրն է)։ Գալլիայի ռեքսին։ Գերմանիայի ռեքսին։ Բոլոր վերոհիշյալներին ուղղված նամակը վերնագրված է այսպես. «Հանուն Հոր և որդվո և Հոգվույն սրբո, մեր մեկ և միակ ճշմարիտ աստուծո։ Կոստանդին և Ռոմանոս հավատացյալ ի նույն աստված հռոմայեցիների կայսրեր. սիրելի և հոգևոր այսինչ եղբոր, երևելի ռեքսին»[137]։ Նաև «Ֆրանկիայի ռեքսին ... Կոստանդին և Ռոմանոս հավատացյալ ի նույն աստված. վեհ օգոստոս ինքնակալներ, հռոմայեցիների մեծ կայսրեր. մեր սիրելի. ցանկալի և հոգևոր եղբոր, Ֆրանկիայի ամենաազնիվ, երևելի այսինչ ռեքսին»[138]։

Բացի արքաների «եղբայր» հանդիսանալուն, հոգևոր ղեկավարները ևս միմյանց «եղբայր»'էին անվանում։ Կոստանդնուպոլսի պատրիարք Նիկողայոս Միստիկոսը (901-907, 912-925) Հովհաննես Դրասխանակերտցի կաթողիկոսին դիմում է հետևյալ կերպ. «Սիրելի եղբօր մերում՝ Յովհաննու կաթողիկոսի Հայոց Մեծաց»[139]։

Վերջապես անդրադառնանք նաև «բարեկամ» բառին։ «Դաշանց թղթի» հենց սկզբում Կոստանդին կայսրը և Հռոմի պապը, դիմելով Տրդատ թագավորին և Գրիգոր Լուսավորչին, ասում են. «Սիրելի եղբարք մեր ի Քրիստոս և բուն բարեկամքս բարձրադահ իշխանութեանս մերոյ» (էջ 12), «զմեծ արքայն Տրդատէս, զհամամիտ և զհամակարի եղբայրն իմ և զբաղկակից բարեկամն»(էջ 15)։

«Բարեկամ» բառը ևս terminus technicus է։ Լատիներեն amicus, որ անցել է Բյուզանդիա, դառնալով φίλος, որ որպես կանոն վերաբերում էր ոչ քրիստոնյա պետության վեհապետին։ Այսպես, «Կոստանդին և Ռոմանոս ի Քրիստոս բարեպաշտ ինքնակալներ, մեծ, վեհ օգոստոսներ, հռոմայեցիների կայսրեր, մեր սիրելի բարեկամ Եգիպտոսի ամենաազնիվ ամիրային»[140]։ «Հնդկաստանի վեհապետին. «Կոստանդին և Ռոմանոս, հավատացյալ ի Քրիստոս աստված հռոմայեցիների ինքնակալ մեծ կայսրեր, Հնդկաստանի այսինչ վեհապետին, մեր սիրելի բարեկամին»[141]։

«Հին պահնամակների հիման վրա Լևոն[142] քրիստոսասեր և իմաստնագույն մեր կայսեր կողմից» 899 թ. Ֆիլոթեոսի կազմած նշանավոր «Պահնամակում»՝ (Կլետորոլոգիոն) այդ «բարեկամը» որպես terminus technicus հիշվում է կայսերական ընդունելությունների ժամանակ հրավիրված օտարերկրացի մեծավորների առնչությամբ. οἱ ἐξ 'Αγάρων *φίλοι* (հագարացի բարեկամներ), ἀπὸ Βουλγάρων *φίλοι* (բուլղար բարեկամներ)։ Οἱ δὲ ἐκ των λοιπῶν ἐθνῶν ἐρχόμενοι *φίλοι* (այլ ազգերից եկող բարեկամներ)[143]։

---

[137] Կ ո ս տ ա ն դ ի ն Ծ ի ր ա ն ա ծ ի ն, էջ 152։

[138] Նույն տեղում, էջ 154։

[139] Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ Պատմութիւն Հայոց. Թիֆլիս, 1912, էջ 266։

[140] Կ ո ս տ ա ն դ ի ն Ծ ի ր ա ն ա ծ ի ն, էջ 153։

[141] Նույն տեղում, էջ 154։

[142] Լևոն VI (886-912), Վասիլ I-ի որդին և Կոստանդին Ծիրանածինի հայրը։

[143] N. O i k o n o m i d è s. Les Listes de Preseance Byzantines des IXe et Xe siecles. Paris, 1972, p. 163. Նշեմ այստեղ, որ բյուզանդական արքունիքում որպես տեխնիկական տերմին կար նաև «որդի»-ն։ Հովհաննես Դրասխանակերտցին Կոստանդին Ծիրանածին կայսրին հասցեագրված նամակում Սմբատ I Բագրատունու վերաբերյալ գրում էր. «որ

## Զ) Տրդատ - Կոստանդին պայմանագրի կլաուզուլան

*«Դաշանց Թղթի» վերջում, քանի որ այն ներկայացվում է որպես մեկ ամբողջություն, գրված է. «Այս գիր միաբանութեան և սիրոյ և հաստատ հաւատարմութեան ի հետ Հայոց գրեցաւ հրամանաւ մերով Կոստանդեայ կայսեր [և Սեղբեստրոս պապի] ի մեծ սիւնհոդոսիս և ի տօնի սուրբ Առաքելոցս յատին լեզուաւ մակագրեալ և արքունական մատանեաւ մերով կնքեալ և ստորագրեալ»: Դժվար չէ նկատել, որ թեև այն գրված է Կոստանդին կայսեր [և Սեղբեստրոս պապի] «հրամանաւ», ստորագրված է միայն կայսեր կողմից: Շատ հնարավոր է, որ տվյալ նախադասությունը՝ կլաուզուլան (բացի մեր կողմից փակագծերի մեջ առնված բառերից), գտնվում էր «Դաշանց Թղթի» Տրդատ-Կոստանդին դաշնագրության վերջում և այն XIII դ. տեղափոխվել է դրան կցված կեղծիքի վերջում, ավելացնելով Սեղբեստրոս պապի անունը: Հասկանալի է, պայմանագրի մասը անհրաժեշտ պատճառներով (որոնց մասին դեռ կխոսվի), պետք որ գրված լիներ լատիներեն: Իսկ Տրդատին տրված պատճե՞նը: Հայ Արշակունիների արքունիքում իշխող էր ոչ թե լատիներենը, այլ գլխավորապես հունարենը: Տրդատն ինքը «յունական աշխարհական դպրութեանն, երկնաւոր իմաստութեանն, յառաջագոյն էր տեղեակ, առաւել փիլիսոփայական մտաց հանճարապիտութեան հմուտ էր, զի ուսեալ էր զայն»[144]: Ինչպես նշվեց վերևում, հայերեն գրերի գյուտից հետո «Դաշանց Թուղթը» հունարենից թարգմանվեց հայերեն: Եթե նկատի առնենք Տրդատ-Կոստանդին պայմանագրի հայերեն թարգմանության մեջ տարված հունարեն առանձին բառերը՝ պեղագոս (πέλαγος - ծով), սիւնհոդոս (σύνοδος - ժողով, եկեղեցաժողով), դեմոսական (δημόσιοι - պետական, հարկ), դեմոս (δῆμος, ավելի ճիշտ՝ δημιος - դատական կատարածու), խրուսկեփալոս (χρυσοκέφαλος - բառացի ոսկեգլուխ, այսինքն ոսկե թագ կրող), տոպազիոն (τοπάζιον, թանկագին քար, բառի հունարեն վերջավորությամբ), յակունթեայ (ὑακίνθινος - թանկագին քար), ադամանտէս (ἀδάμαντες հունարենի հոգնակի ուղղական վերջավորությամբ, եզակի ուղղականը լինի ἀδάμας - ադամաս), վիշապագլուխ (δρακοντοκέφαλος-ի բառացի թարգմանությունը), ապա կարելի է ենթադրել, որ պատճենը գրված է եղել հունարեն[145]: Իբրև թե հունարեն էր թարգմանել Ագաթանգեղոսը. «Իսկ միւս գիրս փոխադրեալ ասենագրին Հայոց թագաւորին Տրդատայ մեծի, Ագաթանգեղոսի, քաջ ճարտար դպրի և տարեալ ի Հայս ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն»:*

---

*հոգևորապէս արժանացաւ անուանել ի ձէնջ որդի ձեզ ծառայն ձեր» (նույն տեղում, էջ 276-277):*

[144] *Ա գ ա թ ա ն գ ե ղ ո ս, էջ 453:*

[145] *Դա հաստատվում է և կողմնակի վկայությամբ: Խոսրով արքայի Հայաստանի արևմտյան բաժնի նախարարներին գրած նամակի և նախարարների՝ Խոսրով արքային գրած պատասխանը Արկադիոս կայսրը «հրամայէ ղհաւատար (հունարենում պետք լինի ἴσον - հավասար, այսինքն՝ պատճեն, հմմտ. «Դաշանց Թուղթ. «եւ ղհաւատարն այսմ խղթոյ», էջ 30 - Հ.Բ) հելլէն գրով ի գիւանի իւրում դնել, զի պահեսցին յիշատակք աղգաց տարաամբողջաց. որ կայ մինչև ցայսօր» (Խ ո ր ե ն ա ց ի, էջ 319): Հայերեն գրերի գյուտից հետո «Դաշանց Թղթի» այս առաջին մասը թարգմանվեց հայերեն:*

Բայց մենք, հենց Կոստանդին կայսրին վերաբերող ուղղակի փաստ ունենք: Վերջինիս ժամանակակից և նրա կենսագրությունը շարադրած (de Vita Constantini) Եվսեբիոս Կեսարացին վկայում է, որ «թագավորը իր ճառերը թելադրում էր լատիներեն, իսկ դրանք մեր լեզվին (հունարեն – Հ. Բ.) թարգմանները էին փոխադրում, դա էր նրանց պարտականությունը»[146] (τῆ ἡμετέρα ʽΡωμαία μὲν γλώττῃ τὴν των λόγων συγγραφὴν βασιλεὺς παρεῖχε. μετέβαλλον δ ʼ αὐτὴν *μεθερμηνευταὶ* φώνη τῇ ἡμετέρα οἷς τουτο ποιεῖν ἔργον ἦν). Նույն Եվսեբիոս Կեսարացուց հայտնի է, որ Կոստանդինը շատ լավ տիրապետում էր և հունարեն լեզվին և Նիկիայի ժողովում հանդես էր գալիս նաև հունարենով»[147] («Ἑλληνίζων τε τῇ φωνῇ ὅτι μηδὲ ταύτης ἀμαθῶς εἶχε»). «Դաշանց Թղթի» առաջին մասում լատիներեն բնագրի թարգմանիչ չի հիշվում: Հնարավոր է, որ հիշյալ նախադասությունը դրված է եղել հետագայում Ագաթանգեղոսի «Պատմության» միջնորդությամբ:

Է) Ե՞րբ, ու՞մ կողմից է գրված և ու՞մ է հասցեագրված «Դաշանց Թուղթը» ներկա վիճակում

Եթե լուծենք առաջին հարցը, ապա իրենց պատասխանը կստանան և մնացածները: Ոչ ոք չի կասկածում, որ «կեղծիքը» ստեղծվել է Կիլիկիայի հայկական պետության սահմաններում[148], ենթադրաբար՝ XI-XIII դդ.:

Նախապես կանգ առնենք քաղաքական խնդրի վրա: XI դ. վերջին 20-ամյակում հռչակված Կիլիկյան Հայաստանի իշխանության գլխավորողը կարո՞ղ էր «կայսերակերպ», «կայսերական թագ կրող», «մեծն արքայն», «պսակաւոր», «արևելեան աՀեղանշան» թագավոր, «թագաւոր և իշխան միաՀեծան», Արևելքի վրա «տիրաբար իշխող» համարվել: Երբ Կիլիկյան Հայաստանը որպես իշխանություն հռչակվեց 1080 թ. և տապալվեց 1137 թ. իշխան Լևոնի գերմամբ և Կոստանդնուպոլիս աքսորով ու մահո՞վ: Ուստի Տրդատ թագավորի անվան տակ XII դ. վերջի և XIII դ. առաջին կեսի Կիլիկիայի հզոր վեհապետն է թաքնված (Լևոն II - Հեթում I):

Անցնենք Գրիգոր Լուսավորչին: Նա «Քրիստոսի կենդանի վկան» է, «Լուսաւորիչն ամենայն Արևելից և Հիւսիսոյ», նա եկեղեցիների չորս սյուներից մեկն է՝ Հռոմի պապից հետո երկրորդը: Նա «Համապատիւ է Հռոմի հզօր աթոռին, և Երուսաղէմացւոց և Անտիոքացւոց և Աղեքսանդրացւոց»: Նրան Հռոմի պապն է օծել «պատրիարք Հայոց Մեծաց. զի ինքն և ամենայն աթոռաժանգք սորա ինքնագլուխ եղիցին՝ յիւրեանց եպիսկոպոսացն առնելով ձեռնադրութիւն առաջարկութեամբ իւրեանց թագաւորին»: Դեռ ավելին. «և պատրիարքքն երեքին՝ Երուսաղէմի և Անտիոքայ և Ա-

[146] Eusebii De Vita Constantini, Lib. IV, cap. XXXII.

[147] *Նույն տեղում,* Lib. III, cap. XIII, col. 1069:

[148] *Անուղղակի կերպով դա մատնում է հենց «Դաշանց Թուղթը»: Սեղբեստրոս պապը Գրիգոր Լուսավորչին շնորհած ընծաները նկարագրելուց հետո, ցույց է տալիս, որ «բաղում զարդս անգինս և անգիւտս ամենայն աշխարհաց, զոր առաքեցի սուրբ խորանացն, որք ի խորին Հայս են, յորում էջ յայտնապէս Միածին Որդին Աստուծոյ» (էջ 24): Էջմիածինը (պարզ է, որպես Հայոց եկեղեցական կենտրոն, հետևաբար և Վաղարշապատը որպես քաղաքական իշխանության կենտրոն) ամենևին էլ «ի խորին Հայս» չեն, այդպիսիք են նրանք եթե դիտենք Կիլիկիայից:*

ղեքսանդրիոյ յորժամ ձեռնադրին՝ կամաւ և ընտրութեամբ Հայոց հայրապետին լիցի, և որ ոք նստցի յաթոռ պատրիարքութեան, զդաւանութիւն հաւատոյն իւրոյ, զոր պարտ է մեզ (Հռոմի պապին – Հ. Բ.) ծանուցել՝ զայն Հայոց հայրապետին ծանուսցէ. զի զնա կարգեցաք մեզ գլխաւորական և հրամանահան ի վերայ ամենայն ասիական միջնաշխարհի»: Հռոմի պապը իբրև թե «ընդհանրական հրովարտակ» է առաքում Անտիոքի, Երուսաղեմի և Ալեքսանդրիայի լատին պատրիարքներին, որպեսզի նրանք «զՀայոց հայրապետն համապատիւ տեսցեն ինքեանց մանաւանդ թէ և նախադաս իսկ[149]. վասն զի յերկոտասան Առաքելոցն չորքն անդ[150] կատարեցան»[151]: Խոսքը հիշյալ երեք պատրիարքությունների հիմնադիրներին է վերաբերում: Իսկ չո՞րրորդը՝ Ո՞ւմ է առաջարկում «Դաշանց Թուղթը»: Պարզ չէ՞, որ լռելյայն Գրիգոր Լուսավորչին, «Քրիստոսի կենդանի վկային»՝ Ամենայն Հայոց կաթողիկոսին, որ տվյալ պահին Հռոմկլայում էր նստում, և կաթողիկոսությունը: Կարճ ասած՝ Հայոց անկախ պետության հոգևոր կենտրոնում: Ուստի բացառվում է XI դ., քանզի բյուզանդացիները 1046 թ. լուծարել էին Հայոց կաթողիկոսությունը, Պետրոս կաթողիկոսին՝ աքսորել, իսկ հիշյալ դարի 80-ական թվականներին տարբեր վայրերում կազմավորվել էր չորս կաթողիկոսություն: «Ի ժամանակիս այսմիկ,– գրում է Մատթեոս Ուռհայեցին,– ի չորս բաժանեցաւ աթոռ սրբոյն Գրիգորի. զի ահա Տէր Վահրամ յԵգիպտոս, և Տէր Թէոդորոս ի Հոնին, և Տէր Բարսեղ ի թագաւորաքնակ քաղաքն Հայոց յԱնի, և Տէր Պօղոս ի Մարաշ քաղաքն. և սոքա իւրաքանչիւր ոք առնէին ձեռնադրութիւնս և օծանէին եպիսկոպոսունս և տային օրհնութիւն սուրբ ձիթոյն, և ի նոցանէ օրհնէին քահանայք, և լինէր պատարագ և մկրտութիւն և պսակն կուսանաց: Եւ էր այս ամենայն սուգ մեծ ի վերայ Եկեղեցւոյն Աստուծոյ»[152]:

«Սեղբեստրոս պապը» սրանցից ո՞ր մեկին պիտի Անտիոքի, Երուսաղեմի կամ Ալեքսանդրիայի լատին պատրիարքությունների հավասարը համարեր: Սեղբեստրոս պապը Գրիգոր Լուսավորչին է նվիրում Երուսաղեմի առաջին եպիսկոպոս սուրբ Հակոբ Տեառնեղբոր պապական վակասը, իր մատանին, գավազանը և շատ այլ բաներ: Եվ ամենաանհավատալին. «Եկն ահիւ մեծաւ առաջի Սուրբ Լուսաւորչին և ի ծունկս իջեալ համբուրեաց զբարձս նորա» (էջ 26): Նախադասության մեկը Հայոց կաթողիկոսի՝ Գրիգոր Լուսավորչի բոլոր «աթոռաժառանգների» ինքնագլուխ լինելն է, ձեռնադրվելը հայ եպիսկոպոսներից՝ առաջարկությամբ Հայոց թագավորի: Իսկ

---

[149] Չհասկանալ «նախադահող», այլ primus inter pares:

[150] Այսինքն Մերձավոր Արևելքում: Հակոբը, Մատթեոսը և Սիմոնը՝ Երուսաղեմում, Մարկոսը՝ Ալեքսանդրիայում:

[151] Այս նախադասությունը «Դաշանց Թղթի» 1683 թ. հրատարակության մեջ մի փոքր տարբեր է. «զի զՀայոց հայրապետն համապատիւ տեսանիցին ինքեանց, զոլով Հայր հոգևոր բոլորի արևելեան յորում առաքելոյն Քրիստոսի չորքն մարտիրոսութեամբ են կատարեցեանք» (էջ 32): Սրանք մարտիրոս են, Գրիգոր Լուսավորիչը «վկա», այսինքն հունական մարտիրոսի փոխարեն հայերեն վկա, որ հունարեն բառի հայերեն թարգմանությունն է: Հմմտ. Ագաթանգեղոսի հունարեն թարգմանության մեջ. «καὶ τὸν μάρτυρα (Գրիգոր Լուսավորչին) καὶ ἀρχιερέα δέξασθαι καὶ τὸν βασιλέα Ἀρμενίας εἰς πάκτα καὶ φιλίαν προτρέψασθαι» (G. G a r i t t e. Documents pour servir a l' etude du Livre d'Agathange. Città del Vaticano, 1946, p. 106).

[152] Մ ա տ թ ե ո ս Ո ւ ռ հ ա յ ե ց ի. Ժամանակագրութիւն, էջ 229-230:

«աթոռաժառանգները» պարզ չէ՞, որ Ամենայն Հայոց կաթողիկոսներն են, իսկ թագավորները՝ Կիլիկիայի Հայոց թագավորները: Որտե՞ղ է այստեղ ունիթոռն ու ունիթուությունը:

Այսպիսով պարզ է, որ Գրիգոր Լուսավորչի անվան տակ թաքնված է Ամենայն Հայոց կաթողիկոսը և «Դաշանց Թուղթը» չէր կարող արտացոլել Կիլիկյան Հայաստանի անդամ XII. դ. քաղաքական իրավիճակը: Այն արտացոլում է Կիլիկիայի հայկական պետության հզորացման շրջանը, երբ Լևոն II-ի օրոք իշխանությունից այն վերածվեց հզոր թագավորության, նրա վեհապետը՝ Լևոն II-ը «էր ճոխ և յաղթաղդաց և հարկաւոր և լծատանջ ամենայն շրջակա ազգացն»[153]: Կիլիկիայի թագավորը Արևմտյան Եվրոպայի և Բյուզանդիայի կողմից ճանաչվեց ռեքս (rex - ρήξ), ինչպիսիք էին Ֆրանսիայի թագավորը («ռէ[154] տը Ֆրանցն» (roi de France), Անգլիայի թագավորը («ռէ Ճառլն» - roi Charles), Գերմանիայի կայսրը («ըմբաւորն Ալամանաց - Imperator)[155]: Այսինքն Կիլիկիայի թագավորը համարվեց նրանց հավասարազորը (հմմտ. «Դաշանց Թղթի» վկայությունը Տրդատի մասին. «թագաւոր և իշխան մեծահեծան ... իշխան աշխարհակալ և հրամանահան հզօր առհասարակ ծովու և ցամաքի, և մի՛ ոք իշխեսցէ ի ձէնջ (ակնարկվում է Մերձավոր Արևելքի խաչակիր պետությունները — Հ. Բ.) դիմադարձ լինել հոյակապ հրամանաց հզօրին Հայոց» (էջ 15-16, Կիլիկիայի թագաւորին):

Այդ չէ՞ր պատճառը, որ Կիլիկիայի վեհապետները, եթե Ռուբինյանների իշխանության շրջանում սեփական դրամ չհատեցին (Թորոս I-ի — 1099-1129, Թորոս II-ի 1145-1169 և Ռուբինյան վերջին իշխանի՝ Լևոն II-ի 1187-1198 կողմից սահմանափակ քանակությամբ սոսկ ներքին շրջանառության համար հատեցին պղնձե դրամներ), ապա թագավորության շրջանում պաշտոնապես ճանաչվելով Բյուզանդիայի և Սրբազան Հռոմեական կայսրության (և Հռոմի պապի) կողմից rex - ρήξ, իրավունք ստացան հատելու միջազգային շրջանառություն ունեցող նաև արծաթե և ոսկե դրամներ: Հեթում I-ի օրոք (1226-1270) թողարկվեցին նաև Հեթումի և Իկոնիայի սելջուկյան սուլթաններ Քեյ-Կուբադի և Քեյ-Խոսրովի անունով՝ հայերեն և արաբերեն մակագրությամբ արծաթե դրամներ[156], փաստ, որ վկայում է Հայոց թագավորության ճանաչման մասին նաև սելջուկյան սուլթանության կողմից:

«Կեղծիքը» ստեղծվել է XIII դ. առաջին կեսում Կիլիկիայի հայկական թագավորության եկեղեցական ու քաղաքական վերնախավի կողմից, այն հասցեագրված էր ո՛չ թե հայերին, այլ խաչակիրներին: Օգտագործելով

---

[153] Վ ա ր դ ա ն  Բ ա ր ձ ր ե ր դ ց ի. Պատմութիւն Տիեզերական. Մոսկվա, 1861, էջ 182:

[154] Կոռիկոսի տեր Հեթումի ժամանակագրության մեջ Ֆրանսիայի և Անգլիայի թագավորները կոչված են «ռէ», այսինքն նշված է «թագավորի» լատիներեն անվանումը (rc):

[155] Համառօտ պատմութիւն ժամանակաց հաւաքեալ ի զանազան պատմութեանց, այսինքն ի Հայոց, ի Ֆռանկաց, ի Յունաց, ի Յասորոց, աշխատութեամբ իմոյ ծառայիս Քրիստոսի Աստուծոյ Հեթմոյ տեառն Կուռիկոսայ, ի թվականի Հայոց ՉԽԵ (1296): Մանր ժամանակագրություններ XIII-XVIII դդ., հ. Ա (կազմեց Վ. Ա. Հակոբյան). Երևան, 1951:

[156] Լևոն II - Քեյ Խոսրովի երկլեզվյան դրամ գտնվել է անգամ Հունաստանի Թեսալիա նահանգում: Տե՛ս Հ. Բ ա ր թ ի կ յ ա ն. Նյութեր գաղութահայ պատմության.— ՀՀ ԳԱԱ «Լրաբեր հաս. գիտ.», 1989, № 3, էջ 76-77:

պետության հզորագույն ժամանակը, Կիլիկիայի Հայոց ղեկավար այրերը փորձեցին շահարկել Տրդատի և Կոստանդին Մեծի միջև խոր անցյալում իրոք կնքված բարեկամության և փոխադարձ օգնության պայմանագիրը՝ հանդես գալու Մերձավոր Արևելքում հաստատված խաչակիր իշխանություններին և թագավորությանը, երեք լատին պատրիարքություններին հավասար կարգավիճակում[157], նամանավանդ, որ խոր անցյալում մեր պատմության մեջ նախընթացը կար: Հովհաննես Դրասխանակերտցին, պատրիարքական աթոռը Եփեսոսից նոր մայրաքաղաքը՝ Կոստանդնուպոլիս տեղափոխելու առիթով, գրում է, թե «Կոստանդեայ որդի մեծն Կոստանդիանոսի, յԵփեսոսէ ի Կոստանդինուպօլիս գնշխարս ոսկերաց Յովհաննու Աւետարանչին փոխեալ, և յայնմանէ համարձակութիւն առեալ պատրիարգ ի Կոստանդնուպօլիս կացուցանէ: Ապա ըստ նմին յայսմ պատճառի համարձակութիւն և Երուսաղէմացւոցն առեալ՝ զիւրեանցն ևս աթոռ հաստատէին, ի պատիւ պատրիարգութեան իրաւունս համարեալ ըստ որում և ի նմա գոլ տեսեալ եղև բանին Հօր ծնունդ և ընդ մարդկան շրջիլ և ի Յովհաննէ մկրտիլ, և խաչիլ, թաղիլ և յերրորդ աւուր յառնել: Եւ վասն զի ցայն վայր չորք միայն էին ընդ երկրաւ պատրիարգ ըստ չորից աւետարանչացն՝ Մատթէոսին յԱնտիոք, Մարկոսին յԱղեքսանդրիա, Ղուկայն ի Հռոմ և Յովհաննուն յԵփեսոս. ապա յայսմանէ իրակերտութեանց վեց բովանդակեալ կային: Ըստ սմին սակի ապա և մերն թագաւոր Արշակ և նախարարութիւնք Հայոց համարձակութիւն առեալ՝ կացուցին ի պատրիարգութիւն սանս Թորգոմայ զմեծն Ներսէս, վասն իրաւունս ըստ արժանին ի մէջ առեալ զսուրբ առաքեալսն մեր՝ զԲարթուղիմէոս և զԹադէոս, որք Ասքանազեանս ազին վիճակեցան ի Տեառնէ քարոզք և աւետարանիչք, և նշխարեալ ոսկերք նոցա՝ կան ի միջի մերում, զորոց և զաթոռն իսկ ընկալաւ կենդանի մարտիրոսն Գրիգորիոս»[158]:

«Դաշանց թղթում» Բյուզանդիա գոյություն չունի, հիշյալ ժամանակաշրջանում 1204-1261 թթ. այն պարփակված էր Նիկիայի շրջանում և քաղաքական ու ռազմական տեսակետից շոշափելի ուժ չէր ներկայացնում: Իսկ Կիլիկիայի հայկական թագավորությունը գտնվում էր իր հզորության գագաթնակետին: Նրա հետ հաշվի էին նստում և՛ Նիկիայի բյուզանդական կայսրերը (1204-1261), և՛ Տիեզերական պատրիարքը: Գերմանոս II պատրիարքի (1222-1244) Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթողիկոսին հղած նամակի վերնագրում ասված էր. «Համայն տիեզերքի Հայոց եկեղեցւոյ վեհափառ կաթողիկոսին, իմաստութեամբ և խոհեմութեամբ բարեզարդեալ տէր Կոստանդնին»: Իսկ նրա հաջորդ պատրիարք Մանուիլ II-ը (1244-1255) թագավոր Հեթումին և Կոստանդին Բարձրբերդցի կաթողիկոսին ուղարկած նամակում (1247/1248) գրում էր. «Ամենաերջանկագոյն, ամենաազնուագոյն, ամենափառաւորագոյն, ամենավեհագոյն, ամենաանուանի թագաւոր ամենաարի և մեծազօր Հայոց ազգի»:

---

[157] Դա էր դրդապատճառը: Անտեսելով այն, Աշ. Հովհաննիսյանը գրում է, թե «Հայ կաթողիկոսությունը ոչ միայն պերճշուք, այլ նույնիսկ հավասարազոր չի ճանաչվել երբեէ Երուսաղեմի, Անտիոքի կամ Ալեքսանդրիայի պատրիարքությունների հանդեպ» (Դրվագներ. հ. Ա, էջ 70): Դա միանգամայն ճիշտ է, բայց XIII դ. առաջին կեսին Հայոց ղեկավար այրերը դա չէին ցանկանում...

[158] Յովհաննու Դրասխանակերտեցւոյ Պատմութիւն Հայոց, էջ 46-47:

նաև՝ «ամենաերևելի հայոց ազգի երից ազնուագոյն, ամենաերջանկագոյն թագաւոր»: Ահա և Հայոց կաթողիկոսին ու հայ կղերին նրա տված բնորոշումը. «Իմաստութեամբ, խոհեմութեամբ և կորովամտութեամբ զարդարյալ Հայոց եկեղեցու վեհափառ կաթողիկոս, հայոց ազնվական ազգի համայն եպիսկոպոսներ»: Ապա և քաղաքացիական ու զինվորական պաշտոնյաները. «Գերամեծար, ամենաերևելի, սրբազան աստիճանակարգում աչքի ընկնող բարձրագույն պաշտոնյաներ, զինվորական կարգերում ընդգրկվածներ»[159]:

Այս լույսի տակ պարզաբանվում և իրենց բացատրությունն են գտնում «Դաշանց Թղթի» մի շարք այլ «կեղծիքներ»: «Պարգևեցի և նորապսակ Պարթևիս մերոյ,— ասում է Սեղբեստրոս պապը,— յիշատակ յաւիտենական ազգաց յաղդս ի յԵրուսաղէմ քաղաքի իջևան Հայոց աղօթականացն զվկայարանն Սրբոյն Յակոբայ, եղբօրն Յոհաննու, զի ի յարքունական գանձուցն շինեսցեն զեկեղեցի և ածցեն պարիսպ բարձր շուրջանակի և ի ներքս սրահս և սենեակս առանձնականս արանց և կանանց ի Հայոց եկելոցն, և ռոճիկ նոցա և ամենայն պիտոյք ի գալ և ի գնալն յարքունուստ լիցի: Պատրաստեցի և տեղի պատարագի Սրբոյն Գրիգորի ի Յարութեան մեծի եկեղեցւոջն զԳողգոթայ զխաչելութեանն և զսնարից ղուպայն և զմիջի կանթեղն մշտավառ, որ կան երեք կանթեղք ի վերայ գերեզմանին Քրիստոսի յիշատակ Լատինացւոց և Հայոց և Հելլենացւոց» (էջ 28):

Այդ բոլորը հայերին «Սեղբեստրոս պապը» չէ, որ պարգևեց: Դրանք հայերն իրենց ջանքերով ձեռք բերեցին: «Կեղծիքը» մի նպատակ էր հետապնդում: Քրիստոնեական եկեղեցու կողմից մեծ հեղինակություն վայելող, այդ թվում և Հայոց եկեղեցու կողմից (հիշենք նրա «Վարքի» հայերեն թարգմանությունը) Սեղբեստրոս պապի անվամբ ու հեղինակությամբ ամրագրել և տարածաշրջանի լատինների ոտնձգություններից վերծ պահել Սուրբ վայրերի Հայոց չարժական ու անշարժ գույքը, այն պահպանել «հաստատուն և անփոխադրական» (էջ 11): Եթե «Դաշանց Թղթում» ոչ մի այլ փաստ գոյություն չունենար, ապա սոսկ այս «անփոխադրական» բառը բավական էր ապացուցելու համար մեր աղբյուրի լույս աշխարհ գալու հիմնական գրդապատճառներից մեկը: Անգամ եթե «Դաշանց Թղթում» հնարավոր է նկատել ինչ-որ «զիջումներ» Հռոմի (կամ բյուզանդական) եկեղեցու հանդեպ, դա մեզ չպետք է խրտնեցնի: Դա կիլիկյան իշխանությունների նրբին քաղաքականության արտահայտությունն է, որ հանդես է գալիս ամեն քայլափոխին, քաղաքականություն, որով մեկ տասնյակ թշնամական պետությունների շրջապատում գտնվող Հայ Կիլիկիան գոյատևեց ամբողջ երեք դար, այնքան, ինչքան Արշակունիները, երկու անգամ ավելի, քան Բագրատունիներն ու Արծրունիները, որոնք, փաստորեն, մեկ թշնամի ունեին՝ Բյուզանդական կայսրությունը: Նման քաղաքականության վերաբերյալ մենք ունենք բազում օրինակներ: Գրիգոր Տղա կաթողիկոսը բյուզանդական կայսր Իսահակ II Անգելոսին նամակ էր գրել, թե վառվում է իր սիրտը բյուզանդական եկեղեցու հետ միանալու սիրով, Կոստանդին Դ Լամբրոնացի կաթողիկոսը Կոստանդնուպոլսի Եսայաս

[159] Հ. Բ ա ր թ ի կ ե ա ն. Հայ-բիւզանդական եկեղեցական յարաբերութիւնները փաստաթղթերում, էջ 62 և 74:

*պատրիարքին՝ թե «բացարձակորեն խոստովանում են հունադավանությունն և խնդրում ու աղաչում հայերին ընդունել բյուզանդական եկեղեցու դիրքը, որ խոստովանում են հույների հետ ամեն ինչում համամիտ ու համահավատ լինել»: Միության մասին «գաղտնի» նամակ էր գրել նաև Ներսես Դ Շնորհալի կաթողիկոսը: Բայց միության գործով մագիստրոս Թեորիանոսի գլխավորությամբ Կիլիկիա ժամանած բյուզանդական պատվիրակությունը ձեռնունայն վերադառնալով Կոստանդնուպոլիս, սինոդին զեկուցեց, թե կասկածելի է, թե Ներսեսը անկեղծորեն ցանկանում է միությունը, կաթողիկոսը «երբեք չի համաձայնի միությանը»: Վերջապես եկեղեցիների միություն էր խոստացել 1247/1248 թթ. նաև Կոստանդին Բարձրբերդցի կաթողիկոսը, բայց երբ բյուզանդական պատվիրակությունը ժամանեց Կիլիկիա, կաթողիկոսը նախօրոք գնացել էր Հռոմկլա: Իսկ Հեթում թագավորն ասաց, թե առանց կաթողիկոսի և Հայոց եկեղեցու բարձրաստիճան գործիչների հնարավոր չէ միությունն իրականացնել: Կոստանդին Բարձրբերդցին նման քայլի էր դիմել նաև 1239 թ.: Նշենք նաև, թե ովքեր են «լատիններն» և որը «լատիներեն լեզուն», որով գրված է համարվում ամբողջ «Դաշանց Թուղթը» իր երկու բաժիններով: «Այս գիր միաբանութեան և սիրոյ և հաստատ հայրենադրութեան ի հետ Հայոց գրեցաւ հրամանաւ մերով Կոստանդեայ կայսեր [և Սեղբեստրոս պապի] ի մեծ սենհոդոսին և ի տօնի սուրբ Առաքելոցս լատին լեզուաւ» (էջ 30):*

*Վստահ ենք, որ այս նախադասությունը (առանց ուղղանկյուն փակագծերի մեջ մեր կողմից առնված բառերի, որ համարում ենք հետագա հավելում, երբ գործող անձինք հանդես եկան Գրիգոր Լուսավորիչն ու Սեղբեստրոս պապը), եղել է «Դաշանց Թղթի» առաջին բաժնի վերջում: XIII դ. կեղծիքում, բնականորեն նախադասությունը տեղափոխվել է տեքստի վերջը, վերաբերելու համար ամբողջ «Թղթին»: Այստեղ մնացել է և «գրեցաւ լատին լեզուաւ»-ը: Բայց երկրորդ բաժնում չկա լատիներեն բառի և ոչ մի հետք: Սակայն քիչ չեն ֆրանսերեն բառերը - ֆրեր-* frere, *օֆրանդ - offrande, տամուժել - demoiselle, շամբռ - chambre և այլն: Սա ևս չի՞ վկայում, որ այն հասցեագրված էր Եվրոպայի խաչակիրներին: Այս առթիվ մի հարց ևս: Ինչպե՞ս պատահեց, որ «Դաշանց Թղթի» հայերեն տարբերակից հասել են տասնյակ արտագրություններ, իսկ «լատիներեն բնագրի» և ոչ մի օրինակ գոյություն չունի: Դիմենք Միքայել Չամչյանին. «Այլ յասել ոմանց, թէ ընդէ՞ր ապա հին օրինակ այնր թղթոյ դաշանց ոչ գտանի ի Հռովմ, այդ չէ́ ինչ. զի ասի ի վերջ թղթոյն, թէ զայն թուղթ եդին ի դիւան արքունի, ապա ի փոխադրել Կոստանդիանոսի ի Հռովմայ ի Բիւզանդիա հանդերձ արքունեօքն՝ այն թուղթ ևս ընդ այլոց թղթոց փոխադրեցաւ անդր... Արդ՝ դուցէ այն յիշատակարանք այրեցան ի մեծի հրկիզութեան, յայրել մեծի դրատան Կոստանդնուպօլսոյ՝ յամի տեառն 476. զկնի մահուն Թէոդոսի Փոքու՝ յաւուրս Զենոնի կայսեր, ... և կամ յայլում հրկիզութեան, որ եղև յաւուրս Լևոնի կայսեր Իսաւրացւոյ պատկերամարտի, յամի տեառն իբր 730»[160]: Եվ Մատթեոս կաթողիկոսի գրածը. «Ինչու՞ համար անհոգացան և չեն հետևիր մինչև ցայսօր այն Հռովմա կորուստը գտնել, ո՛չ գահակալքն Հռովմա. ոչ կարդինալքն Փրո-*

---

[160] *Մ. Չ ա մ չ ե ա ն ց. Պատմութիւն Հայոց. հ. Ա, էջ 642-643:*

բականտայու, և ո՛չ ընկերությունն Հիսուսին: Ասոր պատճառը անհոգությունը չէ՛, այլ՝ հայտնի նախանձ: Վասն զի այն Ագաթանդեղոսին դրչեն ելած ստուգապատում Դաշանց թղթին մեջ քանի մը պարբերությունները՝ արդարև հետո եկած կարդինալներուն նախանձվիլ տվին, և անոնց թելադրությամբը դրգռվեցան վերջին դարերու Հռովմայ գահակալները նույն թուղթին կորստյանը վրա ներքին համոզմամբ ուրախանալու»: Նա բերում է «Դաշանց թղթի» այն տողերը, ուր ասված է, թե Գրիգոր Լուսավորիչը «Հռովմայ դահին մէջ հրամանահան» եղած է, նրա կատարած «հրաշքները», Սեղբեստրոս պապի խնդրանքը՝ Լուսավորչին՝ «ուսո՛ մեզ ղհաւատոյ զդաւանութիւն», և այլ նման բաներ[161]:

Հայերեն բնագրի մեջ հասնել̣ը բազմաթիվ արտագրություններով, իսկ «լատիներեն» բնագրից և ոչ մի օրինակի գոյությունն իր պարզ բացատրությունն ունի: «Դաշանց թղթում» խոսք է լինում հայ-հռոմեական ռազմական դաշինքի մասին: Ամեն անգամ, երբ հայ ժողովուրդը թշնամու կողմից դրված էր անել վիճակում, հույս էր կապում Եվրոպայից ակնկալվող օգնության հետ[162]: Այլ էր «թղթի» «լատիներեն» բնագրի հարցը: Դրա «տիրաժը» պիտի որ երեք օրինակից բաղկացած լիներ, հասցեագրված Արևելքի երեք լատին պատրիարքությունների և պետությունների ղեկավարներին մի կոչով՝ Հայոց կաթողիկոսին և եկեղեցին, Անտիոքի, Երուսաղեմի և Ալեքսանդրիայի լատին պատրիարքություններին հավասար դասել: Կիլիկիայի հայոց ղեկավարները նրանց մի-մի օրինակ ուղարկել են: Նրանք էլ հազիվ թե հավատացին իրենց խոշոր սրբությունների՝ Կոստանդին կայսեր և Հռոմի պապ Սեղբեստրոսի հայոց թագավորին և կաթողիկոսին ցուցաբերած պատիվներին ու մեծարանքին, ապա և միանգամայն դեմ լինելով հայոց «միաբնակ» եկեղեցին իրենց «երկաբնակ» եկեղեցուն հավասար դասելուն, իրենց օրինակները դեն գցեցին հենց այն գլխից, և ոչ վերջին դարերում, ինչպես գրում է Մատթեոս կաթողիկոսը:

Ավարտելով «Դաշանց թղթի» մեր ուսումնասիրությունը, վստահություն ենք հայտնում, որ մասնագետները, ձերբազատվելով Կ. Շահնազարյանցի աղբյուրին տված խիստ ու կրքոտ, բացասական ու միակողմանի գնահատականից (ինչը կարելի է արդարացնել, եթե նկատի առնենք հեղինակի ժամանակներում տիրող մտահոգիչ մթնոլորտը, կապված հայոց շրջանում գլուխ առած կաթոլիկ պրոպագանդան ու հոգեորսությունը), կհետաղոտեն այն, բժշկական տերմինով ասած ո՛չ թե շոշափելով, այլ աղբյուրն անցկացնելով ռենտգենյան ճառագայթների միջով: Համոզված ենք, որ դեռ շատ բան ունի ասելու «կեղծիք» մկրտվածը:

Ամենավերջում մի ցանկություն: Ընթերցողը շատ լավ պատկերացրեց, որ «Դաշանց թղթի» գիտական-քննական հրատարակությունը շատ անհրաժեշտ է և հրամայական: Եվ դա հնարավոր է հաջողությամբ կատարել՝ նկատի առնելով տեքստը պահպանած բազում արտագրությունները:

---

[161] «Ճռաքաղ». Հ. Բ, տետրակ ԺԶ, 1861, էջ 255-256:

[162] Հ. Ս. Ա ն ա ս յ ա ն. Նշվ. աշխ., էջ 50-51:

# "ГРАМОТА О ДРУЖБЕ И СОГЛАСИИ". СОСТАВ, ВРЕМЯ, АВТОР И ЦЕЛЬ ЕЕ СОЗДАНИЯ

*РАЧ БАРТИКЯН*

Резюме

В опубликованной впервые в 1683 г. в Венеции "Грамоте", озаглавленной "Грамота о дружбе и согласии между великим императором Константином, высочайшим папой святым Сильвестром и армянским царем Тиридатом, Просветителем армян святым Григорием", говорится о посещении Тиридатом III и св. Григорием Рима, оказанном им Константином и Сильвестром пышном приеме, предоставлении им больших привилегий, преподнесении ценных даров и т.д. В ней же говорится о заключенном между двумя странами договоре. Исследователи усомнились в подлинности документа, расценили его как фальшивку XI—XIII вв. сфабрикованную в Киликийском армянском государстве сторонниками унии армянской и католической церквей. Наше исследование показало, что "Грамота" состоит из двух частей. В первой, восходящей к 20-м годам IV в. части, говорится о действительно заключенном договоре (имена папы и католикоса включены много позднее). Местом подписания договора был не Рим, а город Никомедия Вифинии Малой Азии. В "Грамоте" просматривается ряд статей договора. Имеется статья, которую можно озаглавить "О дружбе и взаимопомощи" в контексте войны против персидского царя Сапора II, статья о налогообложении, о купцах и их фискальных обязанностях, об освобождении узников и приговоренных работать в рудниках (скорее всего христиан Малой Армении). Кроме того, прорисовывается административный состав Восточноримской империи и царства армянских Аршакидов. На этой подлинной основе источника в первой половине XIII в., т.е. в эпоху наивысшего могущества Киликийского армянского государства, когда оно было провозглашено царством и признано Византией, Святой Римской империей и Сельджукским султаном Рума (кстати, тогда оно и приобрело право чеканить собственную монету, имеющую международное обращение), государственные и церковные мужи Киликии попытались воспользоваться именами, пользующимися наивысшим авторитетом у крестоносцев Востока Константина Великого и папы Сильвестра, и с их помощью обеспечить армянскому католикосату статус, идентичный латинским патриархиям Антиохии, Иерусалима и Александрии, а также защитить армянскую движимость и недвижимость в Святой Земле, будто бы преподнесенную армянам Константином и Сильвестром, от посягательств крестоносцев.

# "CHARTER ON FRIENDSHIP AND CONCORD". COMPOSITION, TIME, AUTHOR AND GOAL OF ITS CREATION

*HRACH BARTIKYAN*

S u m m a r y

The "Charter on Friendship and Concord, signed by the Great Emperor Constantine, Supreme Pope Saint Sylvester, and the Armenian King Tiridates, the Illuminator of the Armenians Saint Gregory", published for the first time in 1683, in Venice, contains information about the visit of Tiridates III and Saint Gregory to Rome, the sumptuous welcome accorded by Constantine and Sylvester, the large privileges granted to them, presentation of precious donations, etc. The same document informs about the agreement, concluded by two countries. The investigators doubted of the document's authenticity, regarded it as a forgery, fabricated in the 11th-13th centuries in the Armenian state of Cilicia, by the adherents of the Armenian and Catholic churches' union. Our investigation showed that the "Charter" consists of two parts. The first one, which goes back to the 20s of the 4th century, concerns the agreement concluded in reality (the names of the Pope and the Catholicos had been included much later). The agreement's signing place was not Rome, but Nicomedia city of Bithynia in the Asia Minor. A series of that agreement's articles are shown through the text of that document: an article which can be titled "About Friendship and Mutual Assistance" within the context of the war against the Persian king Sapor II, an article about taxation, the other one about the merchants and their fiscal obligations, an article about the release of the prisoners and those who had been sentenced to the works in the mines (most probably, the Christians of the Asia Minor). Certain information about the administrative structure of the Eastern Roman Empire and the Kingdom of the Armenian Arshakids can be found as well. On this genuine base of the source, in the first half of the 13th century, i.e. in the period of the utmost might of the Armenian state of Cilicia, when it was declared kingdom and recognized by Byzantium, Holy Roman Empire, and the Seldjuk Sultanate of Roum (by the way, it was in the same time when the Armenian Cilicia was entitled to mint its own coin which had international circulation), the statesmen and the clergymen of Cilicia tried to make use of the names of Constantine the Great and the Pope Sylvester -the figures of highest authority for the crusaders of the Orient, and to secure for the Armenian Catholicosate the status identical to the Latin Patriarchies of Antioch, Jerusalem and Alexandria. Besides, they wanted to protect the Armenian real and movable property, situated in the Holy Land, from the encroachment of the crusaders, posing them as presented to the Armenians by Constantine and Sylvester.